# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

*Լույս է տեսնում 1923 թվականից*


## Այս համարում 9•88




*Հանձնված է արտադրության 1.07.88 թ.: Ստորագրված է տպագրության 6.10.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,292 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66232: Պատվեր՝ 1185: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 1.07.88 г. Подписано к печати 6.10.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3.0 уч.-изд. листа. Тираж 66232. Заказ 1185. Цена 15 коп.

Намечатано в типографии изд-ва ЦК КП Армении. пр. Орджоникидзе, 2.





Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Ասես երազի մեջ, հեռու-հեռուներից տարածվեցին զանգի ղողանջները... Տարածվեցին, եկան-հասան սարահարթի կոնկին ծվարած կացարանին, հետո անցան նրա միջով, հեռացա՜ն, հեռացա՜ն ու մարեցին ո՛վ գիտե տիեզերական անհունի ո՛ր խորխորատում: «Ուր-որ է մանչուկը կգա»,— մտածեց Արամ Գրիգորը, որը Տիգրանաշենից այսքան հեռու իր տանն առանձնացած արձանագրում էր երկրաբանների գաղութի անցուդարձը:

Նա արդեն վարժվել էր, որ ամեն անգամ զանգի ղողանջներից հետո հայտնվում էր մանչուկը: Այդ փոքրիկ տղան: Օշին Վարաժը: Միակ օգնականն ու միակ հույսը: Իսկ զանգահարությունը վերջերս ավելի հաճախակի էր դարձել, գրեթե ամեն օր, բայց առանց որևէ օրինաչափության, տրամաբանության:

... Սովորական, ավելի ճիշտ՝ երկրային տարիներով ապրող մարդու համար այս մոլորակի վրա ժամանակն անցնում էր գրեթե միևնույն ընթացքով: Բայց չգիտես ե՛րբ, չգիտես ո՛ր պահին Նաբուգոդոնոսոր մոլորակի ժամանակը սկսեց դանդաղել: Եվ Արամ Գրիգորին սկսեց այնպես թվալ, թե հանդարտ հոսող գետը փոխել է հունը՝ ետևում թողնելով լճացած ու արդեն ճահճացող մի տղմուտ: Ամենից տխուրն այն էր, որ տղմուտի մեջ այլևս անհնար էր որևէ շարժում դեպի առաջ, դեպի աջ կամ ձախ, նույնիսկ դեպի ետ:

Այսինքն, սկզբում էր տխուր թվում: Հետո բանից պարզվեց, որ կարելի է նաև ժամանակի տղմուտի մեջ ստեղծել ժամանակագրություն: Համենայն դեպս, Արամ Գրիգորը, իր պարտականություններին հավատարիմ՝ գրի էր առնում Տիգրանաշենի անցուդարձը և հիշարժան դեպքերը: Կարելի էր նաև վստահո-

15669-ԱԱ1



րևմ պնդել, թե ավելին պետք էլ չէր: Հենց այդքանն էլ ակնկալում էին նրանից: Բայց… բայց գուցե ընդհանրապես ոչինչ էլ պետք չէ՞ր այն մարդկանց, ում տարին երկու անգամ նա ծածկագրով ուղարկում էր իր շարադրանքը:

«Ինչո՞ւ է ուշանում տղան»,— անհանգստացավ Արամ Գրիգորը:

Նա մոտեցավ ձվածիր լուսանցույցին և դուրս նայեց: Սարահարթի բարձունքից երևում էր հովտում փռված շենը, որը կոչել էին Տիգրան Տիեզերագնացի անունով: Այդ զարմանալի մարդու մասին ավանդությունը պահպանվել էր հնագույն ժամանակներից ի վեր և պատմում էր այն մասին, թե ինչպես առաջին անգամ ոտք դնելով Նաբուգոդոնոսոր մոլորակի վրա, կարողացել էր պահպանել իր ինքնությունը, դիմացել էր մոլորակի բոլոր դավադրություններին, որոնք նպատակ ունեին նրան՝ Տիգրան Տիեզերագնացին ևս հալեցնել ու վերացնել առաջին հայացքից բոլորովին անմեղ և նույնիսկ հաճելի թվացող հորդորներով ու քնքշությամբ: Չէ՜… Տիգրան Տիեզերագնացը Նաբուգոդոնոսոր մոլորակը հայտնագործողը չի եղել: Նաբուգոդոնոսորը հայտնագործել է Աուգուստո Նաբուգոդոնոսորը և այդ լուրն ուղարկելուց հետո, կարելի է ասել, անհետացել է: Համենայն դեպս, նրա մասին որևէ տեղեկություն չի եղել: Աուգուստոյից հետո շատերն են հայտնվել այս կողմերում և բոլորն էլ անհետ կորել… Տիգրան Տիեզերագնացը եղել է միակը, որը դիմացել է, չի տրվել, ինքն իրեն չի կորցրել:

Նրա հետ ժամանածները հաստատվել են այս մոլորակի վրա և հենց հովտում, անտառի եզրին էլ կառուցել են իրենց շենը: Անցել են տարիներ, տասնամյակներ… Փոխվել են սերունդները… Եվ Արամ Գրիգորը հիմա հիշում է, լավ է հիշում իր մանկությունը: Այն օրերն է հիշում, երբ այս մոլորակի ժամանակը դեռ չէր տղմակալել և երբ ամեն քայլափոխի





մի հրաշք էր ու ամեն պահը՝ զարմանալի հայտնագործություն:

Իսկ հետո՞...

Անծանոթը մոտեցավ, մի պահ հապաղեց՝ չիմանալով անելիքը, որովհետև տղան չէր նկատել նրան: Հետո ցածրաձայն, ասես մի կարևոր գաղտնիք հայտնելիս լիներ, ասաց.

— Բարի օր:

Տղան անակնկալից ցնցվեց, բաց թողեց բռունցքի մեջ հավաքած պարանը, որի մյուս ծայրը կապված էր զանգի լեզվակին, և խեթ-խեթ նայեց ոտտեղից-որտեղ հայտնված մարդուն: Այսինքն, դժվար չէր կռահել, թե որտեղից է հայտնըվել անծանոթը: Տիեզերքից...

— Բարև,— ասաց տղան:— Ես Օշինն եմ: Օշին Վարաժը: Իսկ դու ե՞րբ ես վայրէջք կատարել:

— Քիչ առաջ,— պատասխանեց անծանոթը:— Շատ ուշիմ տղա ես... Քո աչքից ոչինչ չի վրիպում:

—Ոչ ոք չի հիշում, թե վերջին անգամ երբ է դրսից մարդ եկել մեր կողմերը,— ասաց տղան:— Նույնիսկ մեր Արամ Գրիգորը չի հիշում:

Անծանոթը նայեց վեր՝ վիթխարի ծառի ճյուղից կախված զանգին: Հետո նրա հայացքը սահեց վար ու երբ հասավ պարանի ծայրին, ժպտաց, բռնեց պարանն ու փորձեց քաշել:

— Ո՞վ է այդ Արամ Գրիգորը,— հարցրեց անծանոթը:

— Ես արդեն ահազանգել եմ,— զգուշացրեց տղան:

Անծանոթը պարանը թողեց:

— Քեզ որ տեսնեն՝ մերոնք կզարմանան,— ոտքից գլուխ անծանոթին չափելով, ասաց տղան:

— Իսկ ո՞վ է այդ Արամ Գրիգորը:

— Վկայողն է:— Տղան գլխով ցույց տվեց սարահարթի կողմը:— Հեռու քաշված՝ մեր պատմությունն է գրում: Բայց ո՞ւմ համար՝ ոչ ոք չգիտե: Դու ի՞նչ առիթով ես մեր կողմերը եկել:

— Տեսչական գործերով: Լսե՞լ ես, թե ինչ բան է տեսուչը:

— Գիտեմ... Երբ գործերը բանի նման չեն լինում՝ սկսում են տեսուչներ հայտնըվել:

— Ապրես:

— Տիեզերանավը որտե՞ղ է իջել:

— Գետի մյուս ափին: Ձեր տիեզերակայանը շատ որոնեցի...

— Իզուր էլ որոնել ես,— ասաց տղան:

— Բայց ուղերթային քարտեզում նըշված էր, որ...

— Եվ իզուր էլ եկել ես,— շարունակեց տղան:— Թեև մեր գործերն իսկապես մի բանի նման չեն, բայց իզուր ես եկել:

Անծանոթը իրեն կարծես թե վատ ըզգաց: Երևի նաև ընկճվեց... Կամ գուցե իսկապե՞ս զգաց, որ ինքը բոլորովին ավելորդ է այս աշխարհում: Համենայն դեպս, այս փոքրիկ մանչը իրեն այնպես է պահում, որ մարդ կարող է միայն շփոթվել ու շվարել: Հիմար վիճակից դուրս գալու համար անծանոթը փորձեց ժպտալ ու մտերմաբար թփթփացրեց տղայի ուսին:

— Ես էլ կարծեցի, թե իմ ժամանման առիթով է զանգը ղողանջում,— ասաց նա:

— Հայտնությունների առիթով զանգը չի ղողանջում,— ասաց տղան:— Ես զանգը խփում եմ այն ժամանակ, երբ անհետանում են:

— Այդ ո՞վ է անհետանում: Որտե՞ղ...

Տղան չպատասխանեց: Նա կտրուկ շրջվեց ու արահետով քայլեց դեպի հովիտ:

— Սպասիր... Այդ ո՞ւր,— գոչեց անծանոթը:

— Եթե քաղաք ես գնալու՝ եկ իմ ետևից,— առանց շրջվելու ձայն տվեց տըղան, և անծանոթը ստիպված մի քանի քայլ վազեց նրան հասնելու համար:

Օշինի բարալիկ ոտքերը ծածկված էին քերծվածքներով: Կարճ տաբատի գոտուց կախված էր փայտե թուրը, որի ծայրը մերթընդմերթ դեմ էր առնում արահետի եզրի թփուտներին:

Անծանոթը ջանում էր ետ չմնալ տըղայից: Ջրահագզեստը խանգարում էր նրան: Ուստի հենց քայլելիս էլ փորձեց հանել: Տղան կանգ առավ, նայեց կարմրատակած ու շփոթված մարդուն ու ժպտաց:

— Երկա՞ր ենք գնալու:

Տղան ժպտում էր:

— Արագ ես քայլում:

Օշին Վարաժը գոտկատեղից դուրս քաշեց թուրն ու՝ «շը՜վ-վո՛ւյթ», «շը՜վ-վո՛ւյթ»՝ սկսեց կտրատել օդը: Հետո ցատկեց խոշոր քարաբեկորի վրա, նայեց անծանոթին, նայեց դեպի հովիտ և թուրն առաջ պարզելով, գոչեց.

— Արդեն հասել ենք:

Անծանոթը մի քանի քայլ ևս արեց ու նայեց թրի ուղղությամբ:

Նրա դիմաց Տիգրանաշենն էր:

— Ես ուշացա,— ականջի տակ զրնգաց ձայնը:— Արամ Գրիգորը հիմա կմըտածի՝ ախր ի՞նչ եղավ մանչուկը...

Եվ թուրը թափահարելով, վազեց դեպի սարահարթի եզրին ծվարած կացարանը:

Անծանոթը գլուխն օրորելով՝ երկար, շա՜տ երկար նայեց տղայի ետևից: Հավանաբար մտածում էր այն մասին, թե փոքրիկ տղաները միշտ էլ ավելի զարմանալի են, քան մեծերը: Ավելի ճիշտ՝ իրենք, տղաներն են սովորաբար զարմանում աշխարհի վրա: Եվ այնքան ժամանակ, քանի դեռ ինքդ ես զարմանում, մըտածեց անծանոթը, կարող ես վստահ լինել, թե երեխա ես: Բայց երբ աշխա՜րհն է սկսում զարմանալ քո վրա...

Ավանդությունները պատմում են, թե Տիգրան Տիեզերագնացը, օրինակ, միշտ մնացել է աշխարհի վրա զարմացող: Եվ զարմանալու հենց այդ ընդունակությունն էլ նրա բազմաթիվ հայտնագործությունների և հատկապես այս մոլորակի տարօրինակ հատկությունները բացահայտելու պատճառ է դարձել:

Բանն այն է, որ Նաբուգոդոնոսորը իրեն այնպես է պահում, որ ասես ոչ թե անշունչ մոլորակ է, ինչպես պետք է լինի ամեն մի մոլորակ, այլ... այլ կարծես ինքն է կենդանի արարած: Եվ այս տարօրինակ հանգամանքը դեռևս ոչ ոք չի կարողացել պարզաբանել: Անշուշտ, ոչ ոք չի խաբվում ամբողջ մոլորակը քողարկող սարերից ու ձորերից, գետերից ու անտառներից: Բայց եթե այդ ամենը խաբկա՞նք է: Եվ դրանցից ոչ մեկն էլ իրականում գոյություն չունի՞: Եվ եթե միայն մարդկանց կարոտած աչքերի՞ն է երևում...

Թերևս... Հապա կենդանի արարած լինելու հանգամա՞նքը: Ի վերջո, մարդիկ եկել ու հաստատվել են, նույնիսկ շեն են կառուցել լոկ այն պատճառով, որ ինքը՝ մոլորակը, նրանց կամքի, նրանց ցանկությունների, նույնիսկ նրանց քմահաճույքի համար ասես փափուկ ու առաձգական խմորագնդիկ լինի: Ոնց ուզեն՝ սեղմում են, ոնց ուզեն՝ ձևում են և, ամենից գլխավորը՝ ի՜նչ մտքներովն անցնի՝ մոլորակը պատրաստակամորեն ըստեղծում է նրանց համար: Կերակուրից մինչև աստղաթիռ, հագուստից մինչև ուղեծրային հզոր կայաններ: Իսկ այդ կայանները որպես փարոսներ՝ օգնում են տիեզերքի այս հատվածում մեղվապարի պես վխտացող աստղաթիռներին, որպեսզի չմոլորվեն, որպեսզի չկորչեն, որպեսզի երկարամյա դեգերումներից հետո կարողանան գտնել տունդարձի ճամփան:

... Անծանոթը դուրս եկավ հաստաբուն ծառերի պուրակից ու հմայված կանգ առավ: Միհարկանի, տափարակ կտուրներով, դրսի կողմից խուլ պատերով և բակին նայող պատշգամբներով տները նրա հոգում ինչ-ինչ հիշողություններ արթնացրին: Դրանք աղոտ, մշուշվող հիշողություններ էին, որոնք այդպես էլ որոշակի չդարձան, մնացին անհասկանալի մի զգացողություն, որը մի ուրիշ դեպքում կարող էր նաև կարոտ կոչվել:

Կանա՜չ-կանա՜չ մարգագետին էր, և սիզախոտը հաճելի զսպանակվում էր անծանոթի ծանր ու խոշոր ոտնամանների տակ: Երբ մոտեցավ, աթոռներից մեկն արդեն թափուր էր: Նա փորձեց հիշել, թե քիչ առաջ, ընդամենը մի քանի ակընթարթ առաջ ո՞վ էր նստած այդ աթոռին. տղամա՞րդ, թե՞ կին... Բայց ոչինչ չկարողացավ հիշել ու ձայն տվեց.

— Բարի՜ օր...

Մարդիկ ելան աթոռներից ու անշտապ քայլեցին տարբեր ուղղություններով: Քանի՞ հոգի էին: Հի՞նգ... Վե՞ց... Միջահասակ ու արդեն ճերմակող մազերով մեկը մոտեցավ, մտերմաբար բռնեց նրա արմունկը:

— Բա՛րև:

— Քիչ առաջ եմ ժամանել,— ասաց անծանոթը:— Նաբուգոդոնոսորի վրա տարօրինակ բաներ են տեղի ունենում: Ի՞նչ կարծիքի ես:

— Բարի գալուստ,— ասաց ճերմակող մազերով մարդը:— Քո բոլոր հարցերին կարող է պատասխանել Վկայողը:— Նա գլխով նշան արեց սարահարթի կողմն ու կրկնեց,— Բարի գալուստ:

— Ես խանգարեցի ձեր զրույցը:

— Մենք չէինք զրուցում:

— Ուրեմն՝ ձեր հանգիստը:

— Մենք փորձում էինք հիշել:

— Ինչ-որ բա՞ն եք մոռացել:

— Երևի... Չգիտեմ... Բոլոր այդ հարցերին կարող է պատասխանել Վկայողը,— կրկնեց ճերմակող մազերով տղամարդը:

— Գոնե հիշո՞ւմ եք, թե ի՛նչ եք ուզում հիշել:

— Մենք ուզում ենք հիշել, որպեսզի չկորցնենք իրար:

— Դուք իրար կորցնո՞ւմ եք:



— Վկայողի անունը, որ շարադրում է մեր ժամանակագրությունը, Արամ Գրիգոր է: Նա քեզ կպատասխանի:

— Իսկ որտե՞ղ են շենի բնակիչները:

Ծերմակող մազերով տղամարդը անմեղ ժպտաց, անօգնական տարածեց ձեռքերն ու ասաց.

— Քիչ առաջ նստած էինք հրապարակում:

— Ձեզնից բացի ուրիշ մարդ չկա՞...

Ծերմակող մազերով մարդը շարունակում էր ժպտալ:

— Չկա՛,— անհամբեր գոչեց անծանոթը:

— Հարցրու նրան... Վկայողին... Նա ամեն ինչ գիտե...

— Իհարկե, գիտեմ,— ասաց Արամ Գրիգորը:— Գիտեմ... նույնիսկ վարժվել եմ... Սովորական բան է դարձել, հասկանո՞ւմ ես:

Անծանոթը թիկնել էր կացարանի պատին և դուրս էր նայում լուսանցույցից: Այս ամենը որքան իրական էր ու շոշափելի, նույնքան և ասես մղձավանջի շարունակություն լիներ:

— Մարդիկ անհետանում են: Ձեր գրքերը դատարկվում են: Իսկ դու շարունակում ես լռել, չտեսնելու տալ,— հոգոց հանեց անծանոթը:

— Ոչ թե՝ գրքերը, այլ արդեն դատարկվել է մեր շենը: Իսկ մարդիկ չեն անհետանում: Նրանք միանում են մոլորակի Գերագույն Բանականությանը: Այդ հինգվեց հոգին էլ, որոնց այսօր հանդիպել ես, երևի շատ շուտով կմիանան...

— Ափսո՜ս,— ափը պատին խփելով, ասաց անծանոթը:— Ափսոս, որ ստիպված կլինենք ամեն բան սկսել նորից...

— Նորից սկսելու հարկ չկա: Ամեն բան ընթանում է իր հունով,— ասաց Արամ Գրիգորը:

— Միայն թե ժամանակի այդ հունը այստեղ տղմոտել է,— ավելացրեց մինչ այդ ծնոտը ափին հենած ու մեծերի զրույցին ուշադիր ականջ դնող Օշին Վարաժը:

— Մարդիկ վերանում են... Քո շուրջն ապրող, շնչող, գործող մարդիկ չքանում են, և դա քեզ համար սովորական բան է դարձել,— հոգնած ձայնով ասաց անծանոթը:— Եվ մտքիդ ծայրով իսկ չի անցնում, որ դառնում ես հանցապարտ:

— Այդ մասին շատ եմ մտածել,— ասաց Արամ Գրիգորը:— Այն օրերին, երբ

մարդկանցից մեկը անհետանում է, մանչուկը սկսում է զանգահարել... Նույնիսկ այդ ահազանգին եմ վարժվել: Զանգի ղողանջները ինձ համար դարձել են սովորական... Գուցե դարձել եմ հանցապարտ: Բայց խնդիրն այն է, որ այս աշխարհում ապրում են միայն նրանք, ովքեր գիտեն, հիշում են, թե ո՛վ են իրենք... Հասկանո՞ւմ ես... Ժամանակին Տիգրան Տիեզերագնացը զգուշացրել էր: Իսկ մարդիկ, նրա հետնորդները, ովքեր պետք է ապրեին այս աշխարհում, պետք է լինեին այս աշխարհի տերը, ամենապարզ բաները հիշելու փոխարեն ընդամենը սիրուն ավանդություններ են հորինել:

— Մի՞թե ավանդությունները ոչինչ չարժեն,— փորձեց առարկել անծանոթը:

Նրան հիմա նույնիսկ կացարանն էր թըվում անիրական, թվում էր խաբկանք, և թվում էր, թե բառերը օճառի պղպջակների պես դանդաղ տարածվում են, ծածանվում ու պայթում իրար ետևից:

— Ավանդություննե՞րը... Իսկական ավանդությունը ամեն ինչ արժե, որովհետև առանց իսկական ավանդության կյանքը ոչ միայն անիմաստ է, այլև անհնարին: Դու մի անհանգստանա... Նաբուգոդոնոսորը փարոս լինելու պարտականությունը վերցրել է իր վրա: Եվ մենք, ես ու մանչուկը, բավական ենք, որպեսզի Տիգրանաշենը կանգուն մնա:

Անծանոթը նայում էր նրանց, այդ երկուսին՝ Արամ Գրիգորին ու Օշին Վարաժին, որոնք խրվել էին ժամանակի տըղմուտի մեջ, բայց չէին կորցրել իրենց տոկունությունը: Նայում էր ու մտածում, թե արդյոք ո՞րն է այդ տոկունության գաղտնիքը: Եթե նրա միտքը հստակ լիներ, երևի կարողանար բացահայտել առեղծվածը: Բայց միտքն ասես դուրս էր ծորում իրենից, տարածվում էր չգիտես թե ուր... Եվ ամեն բան թվում էր թեթև ու հաճելի...

— Դու իրավացի ես... Թերևս՝ հանցապարտ եմ,— մտահոգ ասաց Վկայողը:— Առաջներում, երբ մանչուկը սկըսում էր զանգը խփել, ես հասկանում էի, որ մեկն էլ գնաց ձուլվելու այս մոլորակի Գերագույն Բանականությանը: Եվ սիրտս ճմլվում էր... Ի՞նչ օգուտ այդ Գերագույն Բանականությունից, երբ ոչնչանում են, վերանում են անհատականությունները... Բայց ի՞նչ արած... Իրողությունն այդ է: Նաբուգոդոնոսորը իր կողքին չի հանդուրժում որևէ մեկ ուրիշ բանականություն, ուրիշ անհատականություն... Եվ հարմար մի պահի գայթակղում ու հալեցնում է իր մեջ:

— Եվ քեզ թվում է, թե...—անծանոթն զգաց, որ իր խոսքն ասես հեռու մի տեղից է լսում:— Եվ թվում է, թե դու և մանչուկը դիմանալո՞ւ եք... Իսկ ե՞ս... Ես կկարողանա՞մ դիմանալ...

— Եթե միայն մոռացած չլինես քո իսկական ավանդությունը,— ասաց Արամ Գրիգորը:

Անծանոթը ժպտաց ու մտածեց, որ ինքը երբեք այսքան հաճելի ու թեթև թռիչք չի ունեցել ո՛չ տիեզերքում և ո՛չ էլ նույնիսկ երազների մեջ... Նա սահում էր մշուշի միջով, ու Վկայողի ձայնը նրան էր հասնում որպես հեռավոր մի արձագանք:

Տղան սևեռուն նայեց կացարանի պատին, որին հենված՝ իրենց հետ զրուցում էր անծանոթը: Եվ թե ինչպես նա չքացավ՝ չնկատեց ոչ Օշին Վարաժը և ոչ էլ Արամ Գրիգորը:

Կացարանում հիմա նրանք երկուսով էին:

Արամ Գրիգորը բացեց հաշվեմատյանը և անշտապ սկսեց լրացնել. «Այսօր Տիգրանաշենից հեռացավ ևս մեկը: Օշին Վարաժը, ինչպես կարգն է, խփեց զանգը: Բայց ես, մեղավորս, վարժվել եմ, որ միշտ պակասելու ենք: Տիեզերական տեսչությունից անանուն մեկը ժամանեց: Բայց այլևս երբեք ետ չի դառնա: Մեկ օր էլ չդիմացավ ժամանակի տիղմի մեջ»:

«...չը-դի-մացավ ժա-մանա-կի տիղ-մի մեջ»,— գրեց Արամ Գրիգորը՝ կիսաձայն արտասանելով վերջին բառերը:

Սրահում լռություն տիրեց:

Այդ լռության մեջ Վկայողը փակեց խոշոր հաշվեմատյանը: Ու երբ թերթերն իրար եկան խուլ բամփյունով, Օշին Վարաժը հարցրեց.

— Բայց մենք կդիմանանք, չէ՞...

— Մե՞նք... Հապա, ասա, որ լսեմ ամենաիսկական մեր ավանդությունը:

— Հաբեթը ծնեց Թորգոմին... Եվ Թորգոմ Նահապետը ստեղծեց Թորգոմա ազգը... Թորգոմ Նահապետը ծնեց Հայկին... Եվ Աղեղնակիր Հայկը ստեղծեց Հայկազյան Տունը... Հայկ Նահապետը ծնեց...— խորը շունչ քաշելով, դանդաղ, աչքերը կիսախուփ իր փայտե թրին հենված՝ ամենաիսկական ավանդությունը սկսեց պատմել Օշին Վարաժ մանչուկը:

**ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ**

## Առավոտ

Դեռ չի երևում ձյուն գալու նշան,
Թող քամին ձորից տերևներ տանի,
Այնքան է պայծառ առավոտն աշնան,
Կարծես թե գարնան լուսաբաց լինի:
Հրճվանք են թափում անտառ ու լերինք,
Չեմ տեսել այսքան ջինջ երկնակամար,
Առուն դարձել է հովվական սրինգ
Եվ նվագում է գառների համար:
Ուրուրն երկնքում պտտվում է լուռ,
Գուցե նա որս է տեսել ժայռի մոտ,
Թափված մասուրը այնպես է բուրում,
Որ խենթանում են կարծես հող ու օդ:
Մեղմ է գետակը, էլ ափ չի քանդում,
Ուռիների հետ դարձել է ընկեր,
Հերկը ծխել է հեռավոր հանդում,
Նա կարծում է, թե գարուն է եկել:
Դեռ ժպիտ ունի ծաղիկը ձորում,
Նրան սնում է մայր հողը խոնավ,
Նորից ուզում է կանաչել հեռուն,
Բայց ծիծեռնակը չի խաբվի բնավ:
Իմ երկրի համար սա փորձանք է մեծ,
Տխրություն չկա սրանից ավել,
Վտանգ կա լռին աշնան խաղի մեջ,
Չէ՞ որ ծառերը կարող են խաբվել:

## Վերջն է աշնան

Վերջն է աշնան, և սարերին
Կդառնա ծով անդորրը տեր,
Նոր ձյուն կգա մեղմ ու լռին
Եվ կբերի իր հետ ցրտեր:
Եվ կտխրեն հավքերն ուրախ,
Լուռ կփնտրեն ապրուստ ու կեր,
Ողջ ձմեռվա մուժի մեջ պաղ
Ո՞վ կդառնա նրանց ընկեր:
Ջեռք չեն մեկնի սար ու բլուր,
Չի պաշտպանի հեռուն ձմռան,
Կմահանան շատերը լուռ
Քարոտ ձորում, լանջին լեռան:
Ախ, ինչքան կա կյանքում աղետ:
Նրանք կանցնեն կորչող ձյան հետ,
Եվ չի հիշի ոչ ոք նրանց:
Միտք եմ անում մռայլ ու պաղ
Եվ հանձնվում սրտիս ահին...
Ինչքա՞ն բան է լինում հաճախ
Անվերադարձ, անմարդկային:

## Դեղնած հանդում

Գետն է կորցրել չափ ու սահման,
Ավազահողն է թափով քանդում,
Հոգնած ու ծերուկ պապիս նման
Աշունն է նիրհել դեղնած հանդում:
Պաղ մշուշներն են փարվում հեռվին,
Որ անձրև դառնան անհյուրընկալ,
Քամին ծղոտ է տալիս առվին
Եվ հարդ ու մղեղ անում շուրջկալ,
Խեղճ տերևներն են ընկնում կամաց,
Որ հողում դառնան հայրենի հող,
Իրիկնանում է օրն ամպամած,
Ստվերներ բերում ծանր սահող:
Ինչ-որ ցավ ունի ձորահեռուն,
Շղարշ է հագնում, որ չերևա,
Մթնող թունելն է լույսեր վառում
Մեծ ճանապարհին իմ հին Լոռվա:
Վաղուց անցել է հավքերի չուն,
Նրանք կարոտը տարան մարդկանց,
Կարոտն էլ է մի անմեռ թռչուն,
Սրտի կարոտը՝ խնդում ու լաց:
Կարոտը կրակ ունի անմար
Եվ չունի հավետ հանգիստ ու քուն,
Նա ծնունդով է գալիս աշխարհ,
Նա չի մահանում երբեք կյանքում:

## Կռունկները

Լուսաբացն է ծիծաղադեմ
Բացում աշնան երկինքը մով,
Եվ չվում են, գնում արդեն
Կռունկները մեծ երամով:
Սիրտս է լցվում հենց այդ պահին,
Երբ լսում եմ ձայնը նրանց,
Ես նայում եմ երկնի գահին՝
Եվ աչքերս դառնում են թաց:
Այդ նրանց են վաղուց մերոնք
Ասել՝ կռունկ, խաբրիկ մը բեր,
Բայց չի բերել կռունկն անհոգ,
Եվ շատերի սիրտն է ամպել:
Այդ պապերիս երգն է տխուր,
Նրանց հոգու կարոտը մեծ,
Որ ապրում է լռին ու լուռ
Մեր բոլորի խոհերի մեջ:
Հեռթով կգան, կանցնեն դարեր
Ժամանակի միջով անքուն,
Մենք չենք լինի, բայց երգը մեր
Կապրի հավետ հայոց հոգում:

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# Նորից եկավ պայծառ աշուն

Նորից եկավ պայծառ աշուն՝
Ամառվա հետ վիճելով,
Նախա՛, նախա՛, նախանախշո՛ւն
Իր մեծ տատին հիշելով:

Եկավ շքեղ շալն իր փռեց
Դաշտերին ու սարերին,
Հնչեցրեց ոսկեհարդար
Սաղարթները ծառերի...

Քամու շուրթին բոցկլտացին,
Կայծկլտացին վեր ու վար
Տերևները պղնձաշող,
Բոցալեզու, դալկահար...

Թոթափեցին հանդերն իրենց
Նիրհը՝ տոթի պես ծորուն,
Պակասեցին թռչունների
Երգերը սար ու ձորում...

Աշունն եկավ, եկավ իր հին
Հմայքներով, տոներով,
Եկավ ցնծուն մեր սրտերում
Հաղթանակներ տոնելով...

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ՄԱՆՐԱՊԵՏՅԱՆԻ



ՏԱԹԵՎԻԿ ՊՈՂՈՍՅԱՆ

# Հոգնած ճանապարհի վրա

(ժամանակակից հեքիաթ)

... Երկար, ծուռումուռ, փոշոտ ու հոգնած ճանապարհ է, սկիզբը չի երևում, վերջը չի երևում...

Ճանապարհով դեպի մեզ են գալիս երկու թափառական. պիտի գան, հասնեն մեր փողոցը, ներկայացում տան, հետո հավաքեն իրենց ունեցած-չունեցածն ու նորից ճամփա ընկնեն: Որտեղի՞ց են գալիս, ո՞ւր են գնալու՝ ոչ ոք չգիտի: Ես էլ չգիտեմ: Կգան, կանցնեն այս տողերի միջով և... ուրիշ ոչինչ: Էլ ոչ ոք չի երևա, ոչինչ չի պատահի: Ուրեմն, կլինի միայն ճանապարհ, երկու թափառական դերասան, հանդիսատես, մի պարան, մի երկար ձող ու մի գլխարկ՝ փող հավաքելու համար: Ես էլ կամ, բայց ես անելիք չունեմ, ինձնից պատմել է հասնում՝ պատ-

մում եմ:

Թամաշա՛ է, թամաշա՛... Մեծ ու փոքր թափվել են դուրս, պպզել պատերի տակ, աթոռներ են հանել փողոց. կան, որ չեն իջել՝ իրենց սազական չէ, լուսամուտներից են դուրս կախվել: Տղամարդիկ ծառերին հենված կանգնել են, կանայք տըների շեմերից առաջ չեն գալիս, բայց, միևնույն է, կրակի վրա դրած կաթն անպայման կթափվի: Մեկ-երկուսն էլ վարագույրների ետևից են նայում. «Փողոցի պարզունակ արվեստ է և, պատկերացնո՞ւմ եք, առանց հուշարարի»... Թամաշա՛ է, յալանչին ու փահլևանն են եկե՛լ, լուր տվեք՝ թող գա՛ն, հավաքվե՛ն...

Ներկայացումը սկսվում է, բայց՝ փողոց է՝ ոչ բեմ կա, ոչ վարագույր:

Ձեղած վարագույրը բացենք:

Երկար պարան է վերևում կապած: Երկար պարան է ու բարձր կապած, ծայրերը չեն երևում: Փահլևանը դեռ չկա:

Ներքևում յալանչին է, աջ ձեռքում՝ տձև գլխարկ, մեջը՝ զնգզնգոց: Տեսնես հավաքվածներից ո՞րը ձեռքը գրպանը կտանի, որ փող գցի... Լուսամուտներից որ գցեն, կընկնե՞ն... Որ ճիշտ նշան բռնեն... Մեկը ուղիղ գլխարկի մեջ գցեց՝ զը՛նգ... Բայց համով-հոտով թամաշա չի ստացվում, վաղուց արդեն չի ստացվում, թամաշայի ջիղը քաշած-հանած է: ... Այ, սրանք, մատով ցույց չտամ, պատվարժան տեսակից են, սրանց պատիվը գըռնալով ճարպի պես հաստանում է, դառնում են հաստապատիվ քաղաքացիներ: Տես, գլխարկի սովոր չեն, նոր են դրել գլուխներին. հանել-պարզել էին, հավաքում էին, բայց հիմա ամեն ինչ դասավորել-տեղավորել են գլխինը՝ գլխին, գրպանինը՝ գրպանը: Վերև չեն նայում, փահլևանին չեն նայում. որ նայեն, գլխարկները գետնին կընկնեն: Բայց նշանակալից չեն նայում, իբր, ա՛յդ էր պակաս... Յալանչուն էլ չեն նայում, բայց փող գցում են՝ արյունն է քաշում:

Յալանչին աշխատանքի մեջ է: Ջառի պես քառակուսի ու շարժուն՝ նա գլուխկոնծի է տալիս, գլորվում, պտտվում տարիների մեջ մշակված անտեսանելի շըրջագծով ու իրեն նետած ամեն մի մանրի հետ նրան թվում է, թե վերևից՝ անթիվանհամար պատուհաններից, շենքերի տանիքներից և ճաքած երկնակամարից կարկուտի կատաղած զարկով հիմա ուր որ է կթափվեն ոսկիները:

— Հե՛յ, ժողովո՛ւրդ, հավաքվե՛ք: Թատրոնը ձեր դուռն է եկել, նայեք, ծա՛փ տվեք, Ծա՛փ-ծա՛փ... Ծափի ձայնը շատ եմ սիրում, ծա՛փ: Հարգելինե՛րս, սիրելինե՛րս, սիրունիկնե՛րս, հիմա էլ փողի քսակները զնգզնգացրեք, հո չե՞ք մոռացել, բերե՛լ եք, ուժեղ, միասին բոլորդ, որ ուրիշ դատարկ ձայներ չլսվեն: Ծափը՝ փողի զնգոցի հետ... Հրա՛շք... Հիմա զնգոցը մեղմացրե՛ք, մեղմացրե՛ք ու պահե՛ք... Լավ է, փողը խոսքին պիտի ընվագակցի... Է, բարև՛ ձեզ, բարև՛ ձեզ: Ծանոթանանք: Ես յալանչին եմ, յալանչիների հինավուրց տոհմից: Ինձնից եմ սկսում, որովհետև կարևորը ես եմ, ես որ չլինեմ, սրան՝ փահլևանին, չեք էլ տեսնի, գլուխներդ կախած ապրում եք, վերև՝ երկնքին նայող վաղուց արդեն չըկա... Հիմա վերև՛, վերև՛ նայեք:

Մենք էլ նայենք:

Փահլևանը սև փրակ է հագած ու լուռ է:

Երկար ձողը ձեռքին՝ նա դանդաղ սահում է պարանի վրայով ու ներքև չի նայում: Հիմա, այս պահից և հետո և միշտ նրա համար գոյատևության միակ իմաստը ուղիղ գնալն է, միակ դավանանքը՝ մի շեղվիր ո՛չ աջ, ո՛չ ձախ, ո՛չ խաբել, ո՛չ խաբվել, չծախել-չծախվել, չհրշտել-չհրշտվել՝ հոգին չփշրելու համար, ու թեկուզ կես քայլ առաջ՝ իրեն բաժին հասած այս նյարդի պես լարված կյանք-պարանի վրայով: Հետո ձեռքից կխլեն երկար ձողը, որ հավասարակշռությունը կորցնի, հետո կկապեն աչքերը, հետո կճոճեն պարանը ուժգին, ավելի ուժգին, ասելով, թե աշխարհը երրորդ ատոմային հողմերն են, հետո էլի... Բայց ներքևում կանգնածներին պիտի թվա, թե դյուրին է շիտակ մնալը: Այդպես է պետք: Մոլորված մարդիկ չփշրվելու դասը փահլևանից պիտի առնեն, որ չկտրվի ճշմարտության այս մազե կամուրջը անցյալի և գալիքի միջև: Միայն չկապեն ձեռքերը, միայն ձեռքերը չկապեն:

Իսկ յալանչին խոսք-ատելության շարանն է հյուսում, նետում վեր, ագուցում փահլևանի ոտքերին, որ տապալվի օդում կառուցած պատկերը ճշմարտության:

.... Ուշադրությո՛ւն...,— յալանչին է,— հրաշք-մարդը ոտքը դրեց պարանի վըրա... գնաց, գնաց...մի քայլ էլ արեց... Հետո՞: Հիմա ո՞ւր ես գնալու, թըշվա՛ռ: Ճշմարտության պարանը կարճ է: Դե շուռ արի ու գլխիկոր ետ գնա: Պարան տվողը հո հիմար չի, որ երկարը տա, դու էլ գը-

նաս-գնաս ու տեսադաշտից հեռանաս: Տեղյակ էլ չես, որ տարեցտարի պարանի ծայրից կտրում են: Դե ասա՛, պատասխա՛ն տուր, մի թիզ ճշմարտությունն ո՞ւմ պիտի փրկի: Ոչ մեկին, իրեն էլ չի փրկի: Ո՞վ է տեսել՝ ձող լինի ու առանց դրոշ: Իսկ ծա ասում է, թե դրոշը խախտում է հավասարակշռությունը: Միայն այս խոսքերի համար մի օր ձեռքերը կկապեն: Ես, օրինակ, գետնին փռած պարանի վրայից էլ ընկնում եմ, բայց ո՞վ կասի, թե ճշմարտությունն իմը չէ: Տեսեք, նա տանջվում է, ես նրա տանջանքի շահն եմ յուրացնում: Նա ոչինչ չունի, ես թագավորներ ունեմ՝ դրամների վրա դրոշմված, նրա ցեղակիցը հողմաղացների հետ էր պայքարում, բայց գոնե պայքարում էր, կյանքը ոչ թե հավասարակշռությունը մի մի կերպ պահելուն էր վատնում, այլ՝ հաստատելուն, ու հողին դեռ կպած էր, իսկ սա գնալով համբարձվում է: Մարդու արժեզրկված տեսակ, գետնից կտրված՝ երկրնքին չհասած, օդում կախված արժանապատվություն, որ ընկնելուց չի ջարդվում՝ փշրվում է: Հրաշք հիմար, մատաղացու աղավնի՜... Իմն է ճշմարտությունը, նրանը՝ կրկես, կրկե՜ս, փուչ աշխատանք ու աղի քրտինք, արածը՝ փահլևանություն: Ծափ տվեք ու խնդացեք: Հե՜յ, դո՛ւ, բրավո, բի՜ս... բի՜ս... Կրկնե՜ք, խնդրում եմ, այդ սքանչելի մահացու համարը...

Իսկ վերևում փահլևանը սև ֆրակ էր հագած ու լուռ էր: Ձեռքերը դեռ ազատ էին:

Ներքևում յալանչին փնտրում էր գլորված թագավորներին:

Մոլորված ժողովուրդը խմբվել էր, և ճշմարտության ծարավից ճաքճքած նրանց աչքերում փահլևանը երկնքից կախված խաչի էր նման:

Ինձնից պատմել էր հասնում՝ պատմեցի, բայց ես էլ չեմ հասկանում. ներկայացումը կատակերգությո՞ւն էր, թե՝ ողբերգություն, ինչպես ավարտվեց: Չմոռանամ, ասել, լսել եմ, որ ամեն ներկայացումից հետո պարանը կտրում, կարճացնում են:

Չեղած վարագույրը փակենք:

... Երկար, փոշոտ ու հոգնած ճանապարհ է, վերջը չի երևում: Նույն պարանի ծայրերից բռնած երկու թափառական եկան ու գնացին այս տողերի միջով ու մտքերի փոշի բարձրացրին...

Եվ ուրիշ ոչինչ:





## ԱՂՎԱՆ ՄԻՆԱՍՅԱՆ

ք. Սիսիան



Դեռ չի արթնացել աչքը քաղաքի,
Հոգնածությունը ինձ քուն է բերում,
Ես չեմ ցանկանում իմ բարձից պոկվել,
Սիրուն ծաղիկներ, ինչո՞ւ եք բուրում:

Արևն արթնացավ, ու կյանքը ծաղկեց,
Ծպիտն արևի համբույրն է բերում,
Մարդիկ ապրում են օրվա հոգսերով,
Սիրուն ծաղիկներ, ինչո՞ւ եք բուրում:

Արևն արյունեց կապույտը բախտիս,
Մութը գիշերվա թախիծն է բերում,
Մարդիկ հոգնել են այս անց ու դարձից,
Սիրուն ծաղիկներ, ինչո՞ւ չեք բուրում:



## Սովորական մի օր անցավ

Սովորական մի օր անցավ՝
Նման բոլոր հին օրերին,
Սակայն ոչինչ չավելացավ
Իմ մանկության երազներին:

Սովորական մի օր անցավ,
Ես կորցրի ես մեկ օր,
Մանկությունս ես կորցրի
Իմ մանկական խինդը բոլոր:

Սովորական մի օր անցավ՝
Նման բոլոր հին օրերին,
Բայց ոչ մի բան չավելացավ
Իմ այս օրվա երազներին:

## Քավարան

Արեգակը հեռվում մարեց,
Կապույտներում հեռո՜ւ,
Սև գիշերը անապարեց՝
Սյուեղծողին հլու:

Ես ավելի շատ զգացի
Ջերմությունը քո տաք
Ու կամեցա վերջին անգամ
Ապրել քո շնչի տակ:

Եվ արցունքով ափսոսացի,
Ափսոս՝ ուշ էր, շատ ուշ.
Երազներս լոկ հիշեցին
Քո աչքերը քնքուշ:

Եվ չգիտեմ՝ ինչպե՞ս քավեմ
Մեղքն իմ անքավելի,
Գուցե միայն սրտի սիրով,
Որ քեզ ետ կբերի:

## Երազում եմ

Տարաժամ ես ինձ հյուր եկել,
մենակություն,
Ես քեզ հիմա երազելու միտք էլ չունեմ,
Անխորժակով ինձ ես ծամում, մենակություն,
Իսկ ես հիմա հոգով, գիտես, ուրիշինն եմ:

Դու ասում ես՝ ճանաչում եմ այդ ուրիշին,
Իսկ ես արած քո կատակից ծիծաղում եմ,
—Անխր, ինչպե՞ս ճանաչեցիր, մենակություն,
Երբ ես նրան որպես նյութեղ հիմա չունեմ:

Դու ակամա հարցնում ես՝ապա ինչպե՞ս,
Ես ասում եմ՝ տեսա նրան երազումս:
Դու զարմացած հեռանում ես, մենակություն,
Իսկ ես մենակ երազում եմ...



Քամին խառնում է վարսերը ձյունի,
Լույսը փայլում է ձյուների դեմքին,
Օրը ննջում է աշխարհի բարձին,
Թող արեգակը լույսը ետ բերի:

Քամին խառնում է վարսերը ձյունի,
Քամին մի ուրիշ հեքիաթ է պատմում,
Քամին մտել է իմ ձյունե հոգին,
Քամին չի ուզում, որ մնամ տրտում:

Քամին ուզում է ինձ ընկեր դառնալ,
Քամին վազում է իմ ձյունե սրտում:
Քամին ուզում է, որ ես ցավ չզգամ,
Իսկ ես հոգնել ու քնել եմ ուզում:

## Մեռնող ծաղիկներ

Մեռնող ծաղիկներ, գունատ ու դալուկ,
Մեռնողի դեմքով՝ ապրելու կարոտ,
Ձեր շշուկը թույլ մարեց իմ սրտում,
Հոգիս էլ ձեզ պես հիվանդ է, թախծոտ:

Մեռնող ծաղիկներ, հողաբույր ու թույլ,
Անիմաստ կյանքի թախիծն եք ուսել,
Նա է աշխարհում միայն բախտավոր,
Ով ձեր աղոթքի մրմունջն է լսել:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# Ինչպիսին կուզենայի լիներ քաղաքակրթությունը



# թվականին




Կուզենայի, որ լիներ մի սարք, որը փոշի դարձներ այն ամենը, ինչ կապված է պատերազմի հետ: Օդը ոչ թե աստիճանաբար աղտոտվեր, այլ գնալով մաքրվեր: Եվ ընդհանրապես բնության հետ կապված բոլոր պրոբլեմները լուծվեին, և բնությունը դառնար այնպիսին, ինչպիսին եղել էր դեռ այն ժամանակ՝ Աստվածաշնչյան դրախտում, և ավելին: Վերակառուցումն իրականացնեին ոչ թե խոսքով, այլ գործով: Արդարությունն իր գագաթնակետին հասած լիներ, և պետությունն այնքան քիչ թերություններ ունենար, որ մարդիկ դժգոհելու առիթ չունենային: Աշխարհի բոլոր մարդիկ դառնային բարի, մոռանային չարը:

**ՍՈՒՍԱՆՆԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
**(Երևան, № 185 դպրոց, 5-րդ դաս.)**

Ես ուզում եմ և հաստատ գիտեմ, որ մարդկային քաղաքակրթությունը 2000 թվականին կհասնի անչափ բարձր մակարդակի, քանի որ 27-րդ համագումարում Մ. Ս. Գորբաչովը առաջ քաշեց վերակառուցման հարցը, որը կիրականացվի կյանքի տարբեր ասպարեզներում՝ ուսման, ժողտնտեսության, արդյունաբերության և այլն: Մարդու ձեռքի աշխատանքը կմեքենայացվի, հաշվողական տեխնիկան կընդգրկի ժողտնտեսության բոլոր բնագավառները:

Մարդկային քաղաքակրթության զարգացմանը զուգընթաց՝ արդարությունը կգործածվի իր արդար տեսքով: Վերակառուցումը կճշտի նաև արդարությունը: «Արդարությունը» այժմ արտահայտվում է գողությամբ, կաշառակերությամբ, խաբեբայությամբ, և այլն: Ո՞ւմ է պետք այդպիսի «արդարությունը»: Եվ դա որոշ տեսակետից կվերանա 2000 թվականին, քանի որ այն ժամանակ իրականացված կլինի մեծ մի նպատակ՝ վերակառուցումը:

**ԳԱՅԱՆԵ ՕՍԻՊՈՎԱ**
**(Երևան, № 135 դպրոց, 5-րդ դաս.)**

Հաճախ կարդում եմ պատմվածքներ հին դարերի մարդկանց կյանքից, դիտում կինոնկարներ և մտքով տեղափոխվում նրանց մոտ, ովքեր ապրում էին քարանձավներում, զբաղվում որսորդությամբ, կռվում նետ ու աղեղով, օգտագործում քարե գործիքներ: Երբեմն սարսափով եմ մտածում, թե ինչպես են ապրել մարդիկ առանց հեռուստատեսության, առանց դպրոցի, առանց շատ և շատ բարիքների, որոնք այժմ մենք վայելում ենք: Քսաներորդ դարը համարվում է քաղաքակրթության դար, տեխնիկայի, գիտության դար: Հաճախ մեծերից լսում եմ. «Քաղաքակրթությունը իր հետ բերեց շատ չա-

րիքներ՝ վերացավ պարկեշտությունը, շատացան հիվանդությունները»: Մտածում եմ՝ արդյո՞ք ճիշտ են մեր պապերը, տատերը, մայրիկները, հայրիկները: Մի՞թե քաղաքակրթությունը, իրոք, չարիք է բերում: Առանց զարգացած և քաղաքակիրթ հասարակության դժվար է ապրել, ինչի՞ նման կլինի մեր կյանքը, եթե մարդիկ ապրեն հին դատողությամբ, հին ապրելակերպով, առանց ինքնաթիռի, առանց հաշվիչ մեքենաների, առանց տիեզերանավերի:

Ես ցանկանում եմ, որ չլինեն կռիվներ, զոհեր, որ մարդիկ ապրեն իրոք բարեկիրթ, որ փողոցներում չտեսնենք անվայել արարքներ, միմյանց նկատմամբ լինենք հարգանքով, որ բոլոր ազգերը լինեն համերաշխ, որ չապրեն վայրի մարդիկ, չլինի մարդասպանություն, որ կյանքը լինի անթերի, դպրոցները լինեն բարեկարգ, աշակերտները չվշտացնեն ուսուցիչներին, լինեն բարեկիրթ, ուսումնասեր, որ ոչ մի զավակ իր մայրիկին չվշտացնի:

**ԹԱԴԵՎՈՍ ՄԿՐՏՉՅԱՆ**
**(Երևան, № 185 դպրոց, 5-րդ դաս.)**

Մարդկային քաղաքակրթությունը 2000 թվականին կուզենայի լիներ ավելի կատարելագործված: Կուզենայի ոչ մի շահ չլիներ: Մարդիկ աշխատանքի դիմաց ոչ թե դրամ ստանային, այլ իրավունք ունենային սպասարկման կետերից վերցնել այն ամենը, ինչ իրենց անհրաժեշտ է: Մարդիկ աշխատեին իրենց հաճույքի, իրենց հայրենիքի գեղեցկության ու զարգացման համար և ոչ թե մտածեին փող կուտակելու մասին: Կուզենայի, որ նորաստեղծ ընտանիքների համար առանձին բնակարանը ոչ թե տարիների երազանք լիներ, այլ՝ իրականություն: Դպրոցներում երեխաները սովորեին ոչ թե գնահատականի, այլ գիտելիքներ ձեռք բերելու համար:

**ԿԱՐԻՆԵ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**
**(Երևան, № 185 դպրոց, 5-րդ դաս.)**

Որպեսզի ժողովուրդները կարողանան զարգանալ, աճել, փառքով պսակվել ու հաջողությամբ մտածել և աշխատել, մեր կյանքի հիմքում պետք է ընկած լինի առաջադիմության գաղափարը: Երկու հազար թ.-ին առաջադիմությունը ոչ թե պետք է լինի պատահականություն, այլ անհրաժեշտություն: Ես կցանկանայի, որ ամբողջ աշխարհի մարդկությունը քաղաքակիրթ լիներ, ոչ թե մարդիկ մտածեին մարդկանց ոչնչացնելու, մարդկանց շահագործելու, այլ մտածեին մարդկության համար բարիքներ ստեղծելու մասին: Կցանկանայի մեր հասարակության զարգացման համար մտածեին ոչ միայն գիտնականներն ու քաղաքական գործիչները, այլ ամբողջ ժողովուրդը: Ես կանխազգում եմ, որ երկու հազար թվականին մեր ժողովուրդն իր հաջողություններով կզարմացնի ամբողջ աշխարհին:

**ԱՆՆԱ ԳԱԼՍՏՅԱՆ**
**(Երևան, № 185 դպրոց, 5-րդ դաս.)**

Ճիշտ է, հիմա մարդկային քաղաքակրթությունը գտնվում է շատ բարձր մակարդակի վրա, բայց դա չի նշանակում, որ դա է սահմանագիծը: Վերակառուցումն ու արագացումը քաղաքակրթության հիմնական հենարաններն են: Քաղաքակրթությունը այն ժամանակ կլինի ավելի բարձր մակարդակի վրա, երբ ամբողջ աշխարհին տիրի բարությունը, երբ կապուտակ երկնքում ազատ ճախրի խաղաղության աղավնին, առանց վախենալու, թե ինչ-որ տեղից կարող է թշնամու գնդակը հարվածել իրեն:

**ՀԵՐՄԻՆԵ ԴԱԴԱՅԱՆ**
**(Երևան, № 185 դպրոց, 5-րդ դաս.)**

Երկիր մոլորակն ի վերուստ տրված գանձ է, և մարդկության խնդիրն է պահպանել այն այնպես, որպեսզի նրանից չպակասի նույնիսկ մի բյուրեղ:

Մենք կանգնած ենք նոր հազարամյակի նախաշեմին:՝ Եվ մեզ մտահոգում է այն հարցը, թե ինչպիսին կլինի քաղա-



քակրթությունը երկրորդ ու երրորդ հազարամյակների սահմանագծում, այսինքն՝ 2000 թվականին: Լուրջ մտահոգություն է, ինչ խոսք: Եվ որպեսզի խոսենք իսկական քաղաքակրթության մասին, անհրաժեշտ է, որ առաջին հերթին ինքներս լինենք քաղաքակիրթ կամ մեզ երևակայենք այդպիսին և քննադատի աչքերով նայենք մեր կյանքում տեղ գտած թերություններին: Եվ ոչ միայն նայենք, այլև՝ շտկենք, լինենք ուսուցիչ, խորհրդատու: Այլապես ինչպե՞ս կարող ենք քաղաքակրթություն ակնկալել 2000 թ.-ից, եթե մեր ներկայությամբ ինչ-որ մեկը հայհոյում է մի ուրիշին կամ երիտասարդ տղամարդը հասարակական վայրում վիրավորում է երիտասարդ կնոջը, իսկ մենք անտարբեր դիտողի դերում ենք: Ուրեմն՝ դեն նետենք անտարբերության քողը և շրջապատին նայենք մի քիչ էլ հարազատի աչքերով, որպեսզի բոլոր խոչընդոտները պատնեշվեն ու բնաջնջվեն:

Կցանկանայի լսել միայն ու միայն քընքուշ խոսքեր. «ներեցեք, խնդրեմ», «պատիվ ունեմ», «զգացված եմ», «շնորհակալություն»: Այս բնույթի բազմաթիվ արտահայտությունները կուզեի դառնային բոլորի սեփականությունը այնպես, ինչպես հաց, ջուր և ուրիշ բառերն են, որոնք էլ արտասանվեին առանց ավելորդ ճիգերի ու ձևականությունների և ոչ էլ ընդունվեին ինչպես այժմ է՝ ձևական, իբրև ավելի շատ քաղաքավարությամբ, քան քաղաքակրթությամբ: Կցանկանայի հասարակական տրանսպորտում և այլ վայրերում այլևս չտեսնել փակցված «Չծխել», «Չկեղտոտել» արտահայտությունները, առավել ևս այն սխալ ձևերը, որոնցով հաճախ ներկայացվում են դրանք՝ «Չը ծխել», «Չը կեղտոտել»: Ուղղակի դա որպես վիրավորանք պետք է ընդունվի յուրաքանչյուրի կողմից: Տրոլեյբուսի կամ ավտոբուսի վարորդը մեքենան աշալուրջ վարելու փոխարեն միկրոֆոնով ստիպված չլինի հայտարարելու. «Հարգելի ուղևորներ, խնդրում եմ, դակեցեք կտրոնները»:

Վերանան, վաղուց արդեն անհարմար է, բնակելի շենքերի առաջին հարկերի պատշգամբների մետաղյա վանդակաճաղերը, իսկ մինչ այդ բարձրանա քաղաքացիների ոչ միայն գիտակցական, այլև կենսամակարդակը, որպեսզի ոչ ոք ուրիշների ինչքին աչք չգցի:

Իսպառ ոչնչանան դարի ամենամեծ չարիքները՝ կեղծիքն ու կաշառակերությունը: Վերջ տրվի ավելորդ թղթաբանությանը, մարդիկ միմյանց հասկանան կես խոսքից և, որ պակաս կարևոր չէ, հավատան: Չէ՞ որ հավատը այն զորավոր ուժն է, որ մարդկանց փրկել է ամենածանր պահերին անգամ:

Ուրեմն, ինչո՞ւ մենք էլ չհավատանք, որ կգա 2000 թ.-ը՝ բոլոր լուսավոր իղձերի ու երազանքների իրականացման ժամանակը:

**ԱԼԻՍԱ ԽԵՄՉՅԱՆ**
**(139-րդ դպրոց, 10-րդ դաս.)**

«Ուշադրություն, ուշադրություն, խոսում է Երկիր մոլորակի տիեզերակայանը: Երեք րոպե հինգ վայրկյան հետո «Երազ» տիեզերանավը ուղղություն կվերցնի դեպի Վեներա»:

Ես սթափվում եմ մտքերից, հայացքս վերջին անգամ սահեցնում ինձ ողջերթ ցանկացողների վրայով և շարժվում դեպի տիեզերանավ: Ծեմին՝ ծավի աչքերով, սպիտակազգեստ ուղեկցորդուհին ժպիտով ցույց է տալիս իմ բազկաթոռը: Հանդարտ, անշտապ ներս են մտնում մյուս ուղևորները: Տիեզերանավը հուշիկ ընթացքով պոկվում է տեղից, ու վայրկյաններ անց իմ կողքով սահում են ըսպիտակափետուր ամպերը: Կողքիս նըստած երիտասարդը հարմար տեղավորվել է իր բազկաթոռում և ընկել Մորփեոսի գիրկը: Կարելի է կարդալ: Բացում եմ «Խիղճ» ամսագիրը և հիանում գույներով: Որդան կարմիրով գունավորված Անգլիայի թագուհու թիկնոցը: Նա Աֆրիկայի երեխաների համար լեզուների ուսուցման դպրոց է բացել ու գերձայնային ինքնաթիռ ուղարկել՝ նրանց Լոնդոն բերելու: Մյուս էջում Սահարայի նարնջի բերքահավաքն է: Մեքենաները գործի են գցում պատանիներն ու աղջիկները:

Նորից ուշադրությունս դեպի իրեն է ձգում տիեզերքը: Աչքով են անում երկնային լուսատուները, կանչում են Մարս, Յուպիտեր մոլորակները: Մարս. տեսնես նամակս ստացա՞վ Մարսուհին: Եկող դարասկզբին անպայման հյուր կգնամ նրան: Մոտենում է ուղեկցորդուհին և տիեզերահեղուկով գավաթները մեկնում ուղևորներին: Արբեցնող բուրմունք ունի այդ հեղուկը:

Տիեզերանավի ռադիոհանգույցից սըրահով մեկ տարածվում են Մոցարտի հոգեպարար մեղեդիները, Բեթհովենի ոգե-




Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

շունչ սոնատները:

Մոտենում է հանգստի ժամը: Գնում եմ ննջելու ճոճամահճակալի վրա: Սենյակս կահավորված է ուլտրաճաշակով: Դիմացի պատից ինձ է նայում Տիցիանի Աստվածամայրը՝ իր թախծոտ աչքերով: Այ քեզ մայր... վշտոտ, բայց՝ վճռական, թախծոտ, բայց՝ արարող:

Արթնանում եմ շլացուցիչ այգաբացից: Խցիկիս կլոր պատուհանից տիեզերքն էլ է կլոր երևում, սկսում եմ կարոտել տանը, դպրոցին...

Նեղ միջանցքը տանում է դեպի դիտարահ: Մի խումբ երիտասարդներ ուրախ զրուցում են առաջիկա միջմոլորակային ֆուտբոլային խաղի մասին: Մտքումս որոշում եմ, որ եթե ժամանակ ունենամ, անպայման կգնամ դիտելու «Արարատ»—«Վեներա» թիմերի խաղը: Եթե ժամանակ ունենամ...

Մտովի պատկերացնում եմ տիտանական այն ջանքերը, որ պետք է գործադրեմ Վեներայի կոնսերվատորիան ընդունվելու համար: Հավաքված երիտասարդների խնդրանքով նվագում եմ Առնո Բաբաջանյանի «Էլեգիան»: Հայկական երաժշտությունը դյութում է նույնիսկ այլմոլորակայիններին: Հասնում ենք Վեներա: Մենք շնորհակալություն ենք հայտնում տիեզերանավի անձնակազմին և նստում թևավոր տաքսիներ:

Հյուրանոցում մեզ դիմավորում են դըրանիկները: Արագընթաց վերելակներով բարձրանում ենք հազար հարյուր քսաններորդ հարկը: Տեղավորվում եմ հարմարավետ մի սենյակում: Կարոտս փարատելու համար միացնում եմ հեռուստացույցը, Երկիր մոլորակի ալիքը: Հարազատ, սիրելի ձայները ինձ տանում են Երկիր, ես մտովի զրուցում եմ մտերիմներիս հետ: Հաջորդ օրը անցնում է աննկատ: Այցի եմ գնում ընկերուհիներիս, զրուցում ենք, երաժշտություն լսում: Նրանցից մեկը անակնկալ է պատրաստել. ինձ նվիրում է Երկրի մանրակերտը:

Արդեն ետևում են մնացել տքնաջան ու լարված օրերը: Ընդունվելու առթիվ հեռագիր եմ տվել մայրիկիս: Շուտով ետ կգնամ Երկիր:

Հարազատ մոլորակս ինձ դիմավորում է ամառային կիզիչ արևով: Աշնանը նորից կթռչեմ Վեներա՝ նոր ուսումնական տարին սկսելու:

Ի՞նչ... ասում եք՝ երազա՞նք է... ցընո՞րք... այո, երազանք է, բայց այդ ա-

մենը եւ իրականության կվերածեմ:

**ՎԱՍԱԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ**
**(Մ. Աբեղյանի անվ. № 8 դպրոց, 8-րդ դաս.)**

2000 թվականը կարծես մի սահմանային տարեթիվ լինի: Եվ սահմանային այս տարիները մեզ հուշում են, որ արժանի լինենք մեր ժամանակաշրջանին, աներևակայելի հայտնագործումների, տեխնիկայի հեղաշրջման ու ապշեցուցիչ առաջընթացի, արվեստի ստեղծած բյուրեղյա կոթողների, մարդկային կենսապայմանների, հոգեբանական զարթոնքի, երկու սարսափելի, աշխարհակործան պատերազմներ ապրած, բայց և կյանքին նոր վերածնունդ ու հարություն տալ փորձող 20-րդ դարին: Լինենք մեր դարի ճշմարիտ մշակները:

Ինչպիսի՞ն լինեն մարդիկ ու քաղաքակրթությունը 20-րդ դարի ավարտին: Այնպիսին, ինչպիսին են այժմ: Միայն թող ոմանք ավելի բարեկիրթ ու բարոյական լինեն: Մի մեծ փիլիսոփա ասել է. «Մի արա ուրիշին այն, ինչ չես ուզի, որ անեն քեզ»: Կարելի է սա ընդունել որպես բարոյականության սահմանում: Թող մարդիկ արժանի դառնան Մարդ կոչմանը:

**ԼՈՒՍԻՆԵ ՊԵՏՐՈՍՅԱՆ**
**(139-րդ դպրոց, 9-րդ դաս.)**

Մարդկությունը քարայրից հասել է տիեզերական հեռաստանները, երջանիկ անգիտությունից կանգնել լինելության տագնապալի հարցի առջև:

Ջրրությունները հաջորդել են միմյանց, խաչաձևվել են ոչ միայն սրերը, այլ նաև՝ միտքն ու հանճարը սուր ու մահ կրողների: Երկիր մոլորակն այսօր հարուստ է մարդկային հոգու ու մտքի հրաշքներով: Մարդն իր անցած ճանապարհին շատ երազներ է մարմնավորել. երկաթե թևերով նա կարող է այսօր ճախրել երկնքում, արձագանքել իր հեռավոր մերձավորի կարոտի կանչին, ճեղքել օվկիանոսներ, վճռել լինելությունը իր նմանի...

Մարդկային քաղաքակրթության մեծ երթի մեջ է դաժանորեն բգկտված, բայց և սրբացված իմ հողը:

Մեծ ջրհեղեղի ժամանակ Արարատին ապավինած մարդկության Նահապետը այստեղից ավետեց կյանքի վերընձյուղումը: Հազարամյակները ջնջեցին նրա հետքերը, բայց մարդկային միտքը այսօր պեղում է դրանք և ի լուր աշխարհի ազդարարում, որ պարտք է Արարատին...

Հավիտենականությունից եկած սրբազան լեռն այսօր իր պանդխտությունից տագնապած նայում է այն հսկա շինությանը, որ բարձրացել է դաշտի սրտում: Մարդկային մտքի գերագույն նվաճումն է այսօր ատոմի էներգիան, բայց ինչի՞ կհանգեցնի այն վաղը, գալիք հազարամյակի շեմին... Տարուբերվում է նահիրյան հինավուրց բարդին, և նրա սոսափները թույլ են ու հիվանդագին... Մեծ քիմիան հրաշքներ է գործում, բայց հրեշավոր հետևանքներ է նաև բերում... Մրոտվում է Երևանի վարդագույն ժպիտը, ատոմի ճառագայթումից գունատվում է կանաչ սըլացքը բարդու... Գործարանային աղմուկների, մեքենաների հռնդյունի մեջ դարբնվում է տեխնիկապես հզոր, անխոնջելի թվացող մի ուրիշ բան: Իսկ այդ գալիք մա՞րդը... Աղմուկների մեջ արդյոք չի՞ կորցնում հոգու հարստությունը, երազի գեղեցկությունը: Նա կճանաչի՞ իրեն երրորդ հազարամյակի շեմին: Կուզենայի, որ հողն իր բարությունը, մարդն իր հանճարը բաշխեին իրար...Կուզենայի որ ատոմի միջուկի էներգիան գործադրվեր գտնելու Էքզյուպերիի փոքրիկ հերոսի կորած աշխարհները, և մեքենաների, զանազան գործող ու ստեղծվելիք սարքերի աղմուկը ցրեր միայն հեռավոր ու անմարդաբնակ ավազուտների լռությունն ու տագնապները... Իսկ հողն իր բուրաստաններով ու մրգաստաններով անքեն ողջուներ գալիքի քաղաքացիներին ու վերադարձներ նրանց այն, ինչ կողոպտվել է նրանց ներքին աշխարհներից...

**ԳՈՀԱՐ ՓԱՆԱՋՅԱՆ**
**Երևան, № 139 դպրոց, 10-րդ դաս.**

Մեր երկիրն ապրում է պատմական մի նոր ու նշանակալից շրջան, և վերակառուցումը դարձել է խթանիչ ուժ մեր սոցիալական ամենատարբեր ոլորտներում, տարբեր տարիքի մարդկանց համար:

Ես կարող եմ երազել գերժամանակակից քաղաքի, զարմանահրաշ կառույցների, տիեզերական հրթիռանավերի, աստղային թռիչքների մասին: Դա գեղեցիկ ու հաճելի ժամանց է: Բայց չեմ ուզում կտրվել ռեալ իրականությունից: Կըցանկանայի, որ բոլոր ծնողները հետաքրքրվեին իրենց զավակներով, նրանց արժանի քաղաքացիներ դարձնելու հարցով: Մտածեին, որ իրենց որդին, որը ոչ մի տեղ չաշխատելով, թրև է գալիս,

բարձրացնում օղու բաժակ, մի օր պիտի դառնա հանցագործ... Ծնողները ոչ թե աղի արցունքներ պիտի թափեն դատարանի դահլիճում՝ իրենց զավակին տեսնելով մեղադրյալի աթոռին նստած, այլ նախապես իմանան, որ ընտանիքում երեխա է մեծանում և պարտավոր են նրան դարձնել մարդ ու քաղաքացի:

Մեղավորները ոչ միայն նրանք են, ովքեր բաժակ են բարձրացնում և խմում ու չկարողանալով զսպել իրենց՝ դառնում հանցագործներ, այլ նաև նրանք, ովքեր, ինչպես հարկն է, չեն պայքարում հարբեցողության դեմ: Կցանկանայի, որ 21-րդ դարում մոռացվեր հարբեցողությունը:

Մեզ 21-րդ դարից բաժանում է ընդամենը տասներկու տարի: Դա մարդու կյանքի համար մեծ ժամանակահատված է, բայց հասարակության համար՝ ոչ: Եվ այդ ընթացքում հավատալ, թե հրաշքներ են տեղի ունենալու, ամենաքիչը միամտություն է: Մի՞թե հնարավոր է տասներկու տարում փոխել մի ամբողջ աշխարհ, փոխել մարդկանց հոգեբանությունը, սովորույթները, կենցաղը: Այնպես որ, ինչքան էլ անցանկալի է, որոշ բացասական երևույթներից մեզ հավանաբար չի հաջողվի խուսափել և 21-րդ դարը դիմավորել թերություններից զերծ: Այնուամենայնիվ, եկեք հուսանք, որ մեզ խանգարող բոլոր բացասական երևույթները կթողնենք ետևում: Եվ մենք, նոր բնակարան ստացածների պես, կտեղափոխվենք մեկ այլ ժամանակաշրջան, տանելով մեզ հետ լավը, վեհը, օգտակարը, իդեալականը: Իսկ վատն ու դարն ապրածը, որպես հնոտի, կնետենք աղբանոց:

**ՆԵԼԼԻ ԲԵՋԱՆՅԱՆ**
**(142-րդ դպրոց, 9-րդ դաս.)**

Անկենդան, ոչնչով մյուսներից չտարբերվող մի մոլորակ, որ մոլորված՝ իր հավերժական պտույտն է գործում Արևի շուրջը: Մոլորակ, որ միլիարդավոր տարիներ հետո պիտի կոչվի Երկիր, պիտի լինի կանաչ ու պիտի ունենա մայրամուտների և արևածագերի հրաշք: Հետո կլինի առաջին պարզունակ արարածը, առաջին ծաղկի բույրը, ապա և՝ առաջին մարդկային կյանքը:

Մարդ, որ ապրել է հազարավոր տարիներ առաջ, որ Երկրի վրա երևի թե ամենաանզոր, խեղճ և անպաշտպան արարածն է եղել: Ու մի օր, գիշատիչներից հալածված, պատսպարվել է ինչ-որ մի քարանձավում և մտածել ու երազել է անհաղթ լինելու մասին: Դա, անշուշտ, եղել է նրա ամենաառաջին մտածմունքն ու երազանքը: Հետո եկավ այն հրաշալի օրը, երբ մարդը իր համար հայտնաբերեց, կարողացավ տեսնել բնության հրաշքները և փնտրեց աստծուն: Դա երևի կյանքի հրաշքը բացատրելու անկարողությունից էր: Եվ, ահա մարդը բարձրացավ ինքն իրենից, կատարելագործեց իր միտքը, հոգին մոտեցավ աստծուն և դարձավ հզոր:

Ես ամեն ակնթարթ հիանում եմ մարդ արարածով, նրան տրված երազելու եզակի կարողությամբ: Բայց, չգիտես ինչու, այս նույն մարդը երբեմն չի ուզում պաշտպանել իր իսկ բացահայտած հրաշքները և հաճախ օտար ու թշնամի է բնությանը: Ինչո՞ւ է այդպես... Չեմ կարողանում պատասխան գտնել: Երևի նրանից է, որ մենք շատ ենք կտրվել բնությունից ու հիշում ենք նրան միայն այն ժամանակ, երբ կյանքը իր որոշակի պահանջներն է առաջադրում: Նրանից է գուցե, որ շատ ենք քայլում ասֆալտի վրա ու մոռանում ենք հաճախ, թե ինչ փխրուն է հողը, ինչ հրաշալի է բուրում անտառը անձրևից հետո, ինչպես են օրորվում ծաղիկների գլխիկները մեղմ սյուքից, կամ էլ այն է պատճառը, որ երբեք չենք տեսել բացատում նստած, արևի ջերմությամբ արբած կենդանիներ: Եվ որքան էլ տարօրինակ լինի, ինձ թվում է, որ այսօրվա մարդը հաճախ է կորցնում իր մարդկային դեմքը, ավելի քիչ է սիրում մեր մոլորակը, քան նա, ով դարեր առաջ ամեն վայրկյան դատապարտված էր մահվան: Այդ չէ՞ն վկայում այն հազարավոր գործարանները, որ աղտոտում են մթնոլորտը, ջուրը, վնասում բուսականությունը: Ես համոզված եմ, որ մի օր մարդը կհասկանա, թե ով է ինքը, ինչ է ուզում, և ինչ արժե իր համար մայր բնությունը:

21-րդ և հաջորդող մյուս դարերը, անշուշտ, կունենան այնպիսի բարձր քաղաքակրթություն, որ կպահպանվեն Երկիր մոլորակի անվերջ պտույտը Արևի շուրջը, և մարդկության համար հավերժությունը ուղեծիր կդառնա: Ու բոլոր-բոլոր ժամանակներում կշարունակվի կանաչ մոլորակի հեքիաթային պտույտը...

**ՆԱՐԵԿ ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**
**(139-րդ դպրոց, 9-րդ դաս.)**



*Ամոթը երբեմն արգելում է այն, ինչ չեն արգելում օրենքները:*

*ՍԵՆԵԿԱ*

ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ

ՆԵՐՍԵՍ ԱԹԱԲԵԿՅԱՆ

# Ամոթը խղճի վկայականն է

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Բանաձև ու սահմանում չեմ սիրում, բայց խոսքս հնչելու է բանաձևի պես. ամոթը խղճի վկայականն է: Ամոթի զգացումը, ամաչելու ունակությունը տրվում է միմիայն մարդուն: Նույնիսկ ամենաընտել ու մարդամերձ կենդանուն (ասենք՝ շանը) անթույլատրելի արարքից (ասենք՝ անծանոթի ոտը կծելուց) ետ է պահում ոչ թե ամոթը, ոչ թե իր արարքի նախագնահատումը, այլ վախը: Խիղճն ու ամոթը ամենամարդկայինն են, ու մեզանից յուրաքանչյուրը, հատկապես մանուկ հասակում՝ անգիտության ու ինքնագիտակցության անտեսանելի սահմանը հատելիս, հարկ է, որ իրեն տա պարտադիր հարցը՝ իսկ դու ամաչել գիտե՞ս:

Բանաձևի ու սահմանման հետ մեկ էլ քարոզ ու խրատ չեմ սիրում: Չեմ սիրում, երբ փոքրի խրատվելը մեծից համարվում է անխուսափելի անհրաժեշտություն: Ասվում է՝ բա դու խիղճ չունե՞ս, ամոթ չունե՞ս. էսինչը էնպես ես արել, էնինչը էնպես չես արել: Եվ անչափ տհաճ է, երբ հիշյալ քարոզ-խրատը համեմվում է աշխարհիս մեծերի ու քարոզողի անհատական փորձից քաղված բազմաթիվ ու բազմաքնույթ օրինակներով: Ո՞ւմ ես ասում, ինչո՞ւ ես ասում: Մի ասա, օրինակ տուր, ինքդ օրինակ դարձիր. քո կյանքով, քո վարքուբարքով, քո ապրելու կերպով: Թե չէ՝ երկդիմի կյանք ապրող հայրն իր զավակին խրատում է ազնիվ լինել, լուսա-

հոգի Գարսիա Լորկային Գարսիա և Լդրիկա (երկու հոգի) դարձնող գրականության ուսուցիչը աշակերտից ինքնամոռաց սեր ու ծնրադիր հարգանք է պահանջում բանաստեղծության հանդեպ, գզրոցի չգիտես ո՞ր անկյունում իր կրծքանշանը թողած կոմերիտականը վզկապը տանը մոռացած պիոներին պարզապես գնդակահար է անում նրա հասակակից հերոսների անուններով ու պիոներական կազմակերպության արժանահիշատակ տարեթվերո՛վ:

Իրար ճիշտ հասկանանք. ես էլ եմ ուզում, որ երեխաներն ազնիվ մարդիկ դառնան, որ նրանց ի սկզբանե ու միշտ սիրելի լինի գեղեցիկը: Ես չեմ մերժում դաստիարակության անհրաժեշտությունը: Դաստիարակենք, բայց ոչ այս ձևով: Անելիքն ինքդ արա նախապես, ու քարոզի խեղճ զոհը կտեսնի, կհասկանա, թե ինչ է պետք և ինչպիսին պետք է լինել: Սա դաստիարակության ամենաստույգ, բայց և ամենադժվարին ուղին է: Եվ պատահական չէ, որ քարոզ-խրատի ջատագովները, համարյա առանց բացառության, այլ ճանապարհ են ընտրում. խոսքը չի փոխվում գործի, իսկ խրատը հասունանում—դառնում է պատիժ՝ անկյուն կանգնեցնելուց մինչև «մանկավարժական» կաշեգոտու կիրարկումը...

Եվ այստեղ է, որ վերը հիշատակված սահմանում— բանաձևի մեջ մտնում է մի օտար գումարելի՝ վախը: Ավելի ընտույգ՝ խիղճն ու ամոթը փոխարկվում են վախի, պատժելիության նախազգացումի: «Միայն նա չի ցնցվի իր խղճի դատի առաջ, ով իրեն պատել է ստի, անպատկառության և անամոթության զրահով»: Գորկին է ասել՝ մեծ մարդասերն ու գրողը, որ սարսափել է, տեսնելով, թե «պատվարժան քարոզիչները», երեխային խիղճ ու ամոթ ներարկելու փոխարեն, կոփում են այս անխոցելի, զարհուրելի զրահը: Ներքին դատավորին (խիղճ) գահընկեց անելով, նրա թափուր աթոռին ենք նստեցնում վախը, և այսուհետև սա է օրենքներ հրապարակում ու խստագույնս հետևում դրանց անվերապահ կատարմանը: Վախը ստիպում է թաքցնել մեղքը (թեկուզև ամենաչնչինագույնը), ոչ թե քավել այն: Վախն է պարտադրում ստել, կեղծել, կոծկել: Այսպես է կոփվում անամոթության չարաբաստիկ զրահը, այսպես են ձևավորվում ստորաքարշը, շողոքորթը, չինովնիկ-բյուրոկրատը:

Կրկնում եմ՝ չկարծեք, թե դեմ եմ դաստիարակությանը: Բայց ինչպե՞ս և ի՞նչ ենք դաստիարակում: Ազատախոհ և ինքնակամ ուրույնությո՞ւն, թե՞ «չեմ տեսել-չգիտեմ» անիծյալ հոգեբանությունը, լայնախոհ անհա՞տ, թե՞ խիղճը, ամոթը, նաև պատիվը մոռացած խամաճիկ: Վերջապես, այսօրվա երեխան վաղը մեխանիզմի անլեզու և աննշան պտուտա՞կ է լինելու, թե՞ լիահունչ և ինքնավար մարդ: Այս է խնդիրը, և այստեղ է խնդրի ողջ բարդությունը:

Մեծի հետ մեծ եղիր, փոքրի հետ՝ փոքր. ժողովուրդն է ասել: Հրաշալի է ասել, իսկ ես ուզում եմ ավելացնել միայն այսքանը՝ ԱՐԳԵԼՎՈՒՄ է փոքրերի վրա մեծի դիրքերից ճնշում գործադրել: Ինչի՞ նման է՝ դեռ փոքր ես, չես հասկանա, քո խելքի բանը չէ: Հետո՞: Իսկ եթե հակառակը՝ եղբոր պես, ընկերոջ պես, հասակակցի պես: Ախր, միայն այս դեպքում չի կտրվի կապը, հավատը կմնա: Միայն հավատավորն իր մեջ խիղճ կգտնի ու խոսքի կբռնվի նրա հետ: Դժվա՞ր է: Անշուշտ: Բայց սա է ելքը:

Պետք է, որ ուժեղ և ինքնուրույն անհատներ անենք: Իմ խորին համոզմամբ՝ ամոթն ամենազորավոր զգացումներից է և նա կարող է ուժեղ մարդիկ դաստիարակել: Ու երբ մենք փոքրիկ մարդուն զրկում ենք այդ զորեղ հոգևոր հենցուկից, ամոթը նենգափոխելով վախի զգացման, որպես ակամա մեղավորներ չե՞նք կանգնում նրա ապագայի առաջ: Կան, իհարկե, հակառակը պնդողներ. դաստիարակություն՝ ուժի դիրքերից և վախի հայացքի ներքո: Իսկ ես համոզված եմ, որ ճշմարիտ մարդուն անվայել կամ նույնիսկ հանցագործ արարքից ետ պահողը խիղճն ու ամոթն են, ոչ թե՝ վախը: Վախի միջոցով «դաստիարակված» մարդիկ սովորաբար հենց վախկոտ էլ լինում են ու «չի կարելիի» սահմանն անցնելիս դողում են ոչ թե իրենց խղճի, այլ այդ վախի գիտակցումից: Ժողովուրդը պատահաբար չի ասել, չէ՞. գող, սիրտը՝ դող:

Ուրեմն, եկեք ձեռք քաշենք բազմադեմ կյանքով ապրելուց, եկեք մինչև վերջ ու միանգամայն ճշմարիտ լինենք անգամ ամենամանրուքների մեջ և անվախ կանգնենք մեր խղճի առաջ: Ու մի բան էլ՝ ամեն անգամ քուն մտնելիս, գլուխը բարձին դնելուց առաջ հիշենք ապրած օրվա ողջ անցուդարձն ու հարցնենք ինքներս մեզ՝ իսկ դու ամաչել գիտե՞ս:

Ծովը ծփում է,
Ծովը ծփում է,
Ափին խփում է
Ալիքներով:

Մերթ ծիծաղում է,
Խշշում, խաղում է,
Մերթ էլ պաղում է,
Դառնում խռով:

Այստեղ ինչ լավ է,
Լողում է նավը,
Գիշերահավը
Երգում է մեղմ:

Հապա լուսի՜նը,
Ծովը ուսին է
Քնում լուսինը
Լույսով անմեղ:

Ծովի երազը,
Աղմուկն ու նազը,
Երկնի անհասը՝
Թափված վրան

Կտանեմ հետս,
Կտանեմ հետս,
Որ լցնեմ գետս
Շնչով մի թարմ:

# Ծովը ծփում է

**Երաժշտությունը՝ ԳԵՂՈՒՆԻ ՉԹՉՅԱՆԻ**
**Խոսք՝ ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆԻ**

Հանդարտ, չափավոր



# Պարույր Սևակ
## 1924—1971

## Ճամփեզրի խոտը

Իմ բախտը բերեց.
Ես ո՛չ մի անգամ
Չշփոթեցի իմ աճեղ դարը օրացույցի հետ,
Եվ ո՛չ մի անգամ
Չկարողացա (չկարողացա՜-չկարողացա՜)
Դառնալ խուսափող այն անցորդիկին,
Որ համարժեք էր հաջողությանը...

Իմ բախտը բանեց.
Ես բոլորի՜ հետ ու մեկտեղ էի,
Բայց ո՛չ նրանց հետ,
Ովքեր գոռգոռում
Ու բոռում էին բոլորի՜ անվամբ,
Բոլորի՜ն անվերջ վկա բերելով,
Մինչ այդ «բոլոր»-ի
Անունը թե կար՝ ամանում չկա՜ր...

Իմ բախտը բերեց.
Ես գրչիս կո՛թը հաճախ ծծեցի
Ու հենց դրանո՛վ հաճախ կշտացա,
Բայց ո՛չ երբևէ գրիչ ծախելով...

Իմ բախտը բանեց,
Ինչպես բանում է բախտը այն... խոտի,
Որ ճանապարհի եզրին է բուսնում,
Միշտ կոխկրտվելով՝
Ես ցողունի տեղ, ստիպվա՛ծ, արմա՜տ
երկարացրի...

Ես գյուղ չունեմ, բայց մի քանի անգամ եղել եմ գյուղում և զմայլվել թարմ, կուսական բնությամբ: Քաղաքի մանուկների, այսինքն՝ մեր, և գյուղի մանուկների միջև կան շատ տարբերություններ, որոնց մասին ասված է նաև Ակսել Բակունցի «Մեր գետը» պատմվածքում: Ես կարող եմ հիշել, թե ինչպես Անդոն և իր ընկերը, այսինքն՝ պատմվածքի հեղինակը, երջանիկ արկածներով են անցկացրել իրենց մանկության տարիները: Նրանք միշտ կարողանում էին գնալ գետը, որը շատ մաքուր ու վճիտ էր, և միշտ կարող էին լողանալ ու դուրս գալ տաքանալու, իսկ մենք՝ քաղաքի երեխաներս, չենք կարող վազել այս կամ այն լիճը լողանալու: Գյուղում երեխաները շնչում են թարմ, մաքուր թթվածին, իսկ մենք քաղաքում՝ գործարանների կեղտոտ օդը: Քաղաքի կանաչ գոտին չի հասցնում բավարար քանակությամբ թթվածին արտադրել: Բայց չէ՞ որ բույսերն էլ են շնչում, ինչպես բոլոր մարդիկ:

Բարի նախանձով եմ նայում գյուղի երեխաներին և նրանց պես ես էլ եմ ուզում թարմ օդ շնչել:

ԱՆՆԱ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

**Ստ. Զորյանի անվ. № 56 միջն. դպրոց, 5-րդ դաս.**

**Ըստ առասպելի, երբ արու թռչունը էգի պես ձու դնի և թխսի, այդ ձվից դուրս կգա մի զարհուրելի թունավոր արարած՝ ընդունակ իր շնչով թունավորելու համայն աշխարհի օդը: Այդ հրեշավոր արարածին կարելի է սպանել միայն նրա առջև հայելի պահելով: Տեսնելով իր դեմքի հրեշավոր նողկալիությունը, նա իսկույն սատկում է սարսափից:**

Առասպելն ասում է, որ նման հրեշին կարելի է սպանել միայն հայելիով: Դե եկեք պահենք նրա առջև մեր «էկոլոգիական հայելին», որպեսզի նա կարողանա տեսնել իր իսկական դեմքը: Եվ այսպես, քիմիական գործարանները մթնոլորտ են նետում հազարավոր տոննաներ քլորապրեն, դիքլոր-բութեն, տոլուոլ, քլոր, բութադիեն, ածխածնի օքսիդ և շատ այլ վնասակար ու թունավոր նյութեր, որոնք առաջացնում են նյարդային և անոթային համակարգերի գրգռումներ: Քացախաթթուն, մրջնաթթուն և մի շարք այլ թթուներ առաջացնում են աչքերի և վերին շնչառական ուղիների լորձաթաղանթների խիստ բորբոքումներ: Քլորոպրենը թունավոր է, օժտված է թմրեցուցիչ հատկություններով, առաջացնում է աչքերի և վերին շնչառական ուղիների լորձաթաղանթների բորբոքումներ՝ մթնոլորտում դրանց սահմանային թույլատրելի արժեքների գերազանցման դեպքում: Իսկ գիտական հոդվածներից մենք իմանում ենք, որ քլորոպրենը ամենավտանգավոր թույներից մեկն է:

Մեզ հատկապես լավ կհասկանան «Նաիրիտի» հարևանությամբ գործող դպրոցների աշակերտներն ու ուսուցիչները, որոնք հաճախ ստիպված են լինում կիսատ թողնել դասերը և տառացիորեն տուն փախչել, զարկայինահավոր արտանետումների օրերին: Այժմ շատ բան է հայտնի և՛ երևանցիներին, և՛ կիրովականցիներին, և՛ այլոց, որոնք, ասես, արթնացած լեթարգիական քնից, մի հետադարձ հայացքով սարսափած նկատում են, թե որքան է ապականված այն փոքրիկ հողակտորը, որը մեզ բաժին է հասել պատմությունից: Հատկապես, երբ մեր ժողովուրդը կարողացավ թոթափել իր դարավոր թշնամիների լուծը և հնարավորություն ունեցավ վերջապես խաղաղ, շինարար կյանքով ապրելու, մեր մայրաքաղաքը մաքուր, առողջ, աչք շոյող մի բնակավայրի վերածելու փոխարեն մենք վարեցինք անխոհեմ քաղաքականություն՝ զարգացնելով մեծ քիմիան, ապականելով ոչ միայն միլիոնանոց մայրաքաղաքը, այլև առողջավայրեր հանդիսացող Կիրովականը, Ալավերդին և այլն: Այո, այժմ մեր որոշ քաղաքներում անցանկալի հյուր են սմոգները (թունամշուշ)՝ այդ ամենանկուլ հրեշները: Ի՞նչ բան է սմոգը և ինչպե՞ս այն հայտնաբերվեց: Մթնոլորտում տեսանելիության անկման երևույթը արհեստական արտանետումների հետևանքով՝ կոչվում է թունամշուշ: Հայտնի են նրա մի շարք տեսակներ, ծանոթանանք դրանցից երկուսին:

ՍՄՈԳ տերմինն առաջացել է smoke (ծուխ) և fog (մառախուղ) անգլերեն բառերի հապավումից: «Թունամշուշ»-ը սմոգի հայերեն թարգմանությունն է:

... 1952 թվական: Լոնդոնը դեկտեմբերի 5-ից ծածկված է եղել խիտ մառախու-



ԱՇՈՏ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# «ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՃԱՅԵԼԻ»

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

ղով: Մառախուղի սկսվելուց մոտ տասը ժամ հետո Լոնդոնի բնակիչների մեծ մասը ուժեղ ջերմախտ, սրտխառնոց, շընչարգելություն են ունեցել:
Սմոգներ Լոնդոնը տեսել է 1956, 1957, 1962 և այլ թվականներին ևս:

Բնապաշտպան աշխատանքների շնորհիվ, ավելի քան մեկ տասնամյակ է, որ սմոգ չի նկատվում Լոնդոնի օդային ավազանում: Սակայն չկարծեք թե թունամշուշը վերջացել է ողջ աշխարհում: Բընավ ոչ: Թունամշուշի առաջացման համար թերևս «բարենպաստ» պայմաններ կան հենց մեր մայրաքաղաքում՝ Երևանում, ձմեռվա ամիսներին, նախ՝ բնակլիմայական պայմանների, այնուհետև առատ արտանետումների հետևանքով: Դեկտեմբեր-հունվար ամիսներին, առավոտյան ժամերին, քամու բացակայության, ջերմաստիճանի և օդի հարաբե-

րական խոնավության 85 և ավելի տոկոսի դեպքում: Այն ձևավորվում է ածուխի կամ նավթամթերքների այրման հետևանքով մթնոլորտ բաց թողած գազերից ու աէրոզոլներից:

Քանի որ խոսք գնաց թունամշուշի մասին, եկեք միանգամից ծանոթանանք նաև մյուս տիպի սմոգների հետ, որոնք հայտնաբերվել են շատ պատահականորեն՝ ամերիկյան անվադողեր արտադրող մի ֆիրմայի ձեռներեցության շնորհիվ: Այդ ֆիրմայի ղեկավարները գտնում էին, որ իրենց պատիվ չի բերում անվադողերի խոտանի խիստ բարձր քանակությունը, և երբ փնտրեցին ու գտան պատճառը, պարզվեց, որ խոտանի ահազանգերի «առյուծի բաժինը» գալիս էր Լոս Անջելեսի սպառողների կողմից: Գիտնականները պարզեցին, որ Լոս Անջելեսում, որոշակի մթնոլորտային պայմանների դեպքում, առաջանում է սմոգանման մի երևույթ, որի ժամանակ մթնոլորտում գրանցվում են օզոնի կոնցենտրացիաների բարձր արժեքներ: Գաղտնիք չէ, իհարկե, որ օզոնի ազդեցության տակ ռետինե իրերը ճաքճքում և չափազանց շուտ են շարքից դուրս գալիս: Մնում էր պարզել, թե ինչ ճանապարհով էր քաղաքի մըթնոլորտում հայտնվել օզոնի անսպասելի բարձր քանակություն: Հետազոտությունները ցույց տվեցին, որ որոշակի մթնոլորտային պայմաններում (ուժեղ արեգակնային ճառագայթում, շմոլգազի և ազոտային օքսիդների գազերի անհրաժեշտ քանակություն), մթնոլորտում տեղի են ունենում այսպես կոչված ֆոտոքիմիական ռեակցիաներ՝ օզոնի առաջացմամբ: Որպես կանոն, սմոգի այդ տիպը Լոս Անջելեսում առաջանում է օգոստոս-սեպտեմբեր ամիսներին, կեսօրյա ժամերին, քամու 3 մ/վրկ-ից փոքր արագությունների, ջերմաստիճանի 24—32 աստիճանի և հարաբերական խոնավության 70 տոկոսից ավելի ցածր արժեքների դեպքում: Տեսանելիությունն այդ սմոգների դեպքում նվազում է մինչև 1,5 կմ: Ինտենսիվ արեգակնային ճառագայթում հնարավոր է միայն հարավային քաղաքներում, որտեղ և զարգացած ավտոմոբիլային երթևեկության առկայության պայմաններում (վերջինս պայմանավորում է սմոգ առաջանալու համար անհրաժեշտ գազերի քանակը մթնոլորտում) ձևավորվում է այս սմոգը:

Սմոգների այս տիպը հաճախ մեր հանրապետության մայրաքաղաքի անցանկալի հյուրն է: Դա բացատրվում է այստեղ ուլտրամանուշակագույն ճառագայթների բավարար քանակության առկայությամբ և սմոգի ձևավորման համար անհրաժեշտ գազերի բարձր մակարդակով: Ինչպես արդեն գլխի ընկաք, մեր քաղաքը կարող է «պարծենալ», որ աշխարհի այն հազվագյուտ քաղաքներից է, որոնք ունենում են թունամշուշ և՛ ամռանը, և՛ ձմռանը:

Վերը բերված բոլոր օրինակներում աղտոտվածության բարձր կոնցենտրացիաների ձևավորման պատճառը հանդիսացել է մթնոլորտային անբարենպաստ պայմանների միաժամանակյա գործունեությունը:

Ցավոք, մեզ մոտ մինչև այսօր բացակայում են ոչ միայն սմոգային վիճակների հետևանքով հիվանդությունների տարածման շուրջ արվող հետազոտությունները, այլև սմոգային վիճակները երևան հանող և տեղեկատվություն կատարող աշխատանքները:

Ֆոտոքիմիական (լոսանջելեսյան) թունամշուշի դեպքում խիստ տուժում են տեսողական օրգանները: Օզոնի բարձր կոնցենտրացիաները չափազանց վնաս են հասցնում մարդկանց, արագորեն առաջանում են նոր օրգանական միացություններ, որոնք խիստ վնասում են մարդկանց տեսողական օրգանները, առաջ բերելով աչքերի լորձաթաղանթի բորբոքումներ: Աղտոտվածության հետևանք են հանդիսանում հատկապես երեխաների շրջանում տարածված ալերգիկ հիվանդությունները: Գերմանացի գիտնականների կողմից մանուկների աճի անոմալիաների և մթնոլորտի աղտոտվածության միջև գտնվել է սերտ կապ (հանձինս ռախիտ և այլ հիվանդությունների, հեմոգլոբինի խախտման, քաշի և աճի նորմայից շեղման և այլ անոմալիաների):

Ինչպես համոզվեցինք, մթնոլորտի աղտոտվածությունից բխող արհավիրքները զարհուրելի են, և ահա թե ինչու այդքան անհրաժեշտ է այդ հրեշին՝ քիմիական գործարանին, «էկոլոգիական հայելի» ցույց տալը: Այ, հենց դրա համար հարկավոր է, որ մենք բոլորս ունենանք խոր գիտելիքներ գոյապահպանության հարցերում: Ընդ որում, գիտելիքների պաշար մենք պետք է սկսենք հավաքել ամենացածր տարիքից:

ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

# ՄԻՋԱՏԱԿԵՐ ԲՈՒՅՍԵՐ




Այո, այո, բույսեր, որոնք բացի ֆոտոսինթեզ կատարելուց, սնվում են նաև կենդանի օրգանիզմներով: Այդպիսիք շատ կան. Երկրի վրա հայտնի են մոտ 500, ՍՍՀՄ-ում՝ մոտ 18, իսկ Հայաստանում՝ 3 տեսակ:

Միջատասեր բույսերը բազմամյա խոտաբույսեր են, թփեր, թփիկներ: Թե ինչո՞ւ են միջատակեր բույսերը սնվում միջատներով, բացատրվում է նրանով, որ դրանք աճում են լճերի ու գետերի ափերին, տորֆային ճահիճներում ու գերխոնավ մարգագետիններում, որտեղ քիչ են ազոտական միացությունները: Եվ, ահա, որպեսզի լրացնեն ազոտի քաղցը, ինչպես նաև ֆոսֆորի, կալիումի պակասը, միջատակեր բույսերը միջատներ են որսում, որի համար բնությունը նրանց օժտել է որսացող ապարատներով, որոնք, իհարկե, տարբեր տեսակների մոտ տարբեր են: Օրինակ, միջատակեր ճանճորսինը թակարդի ձևով են: Այսպես, միջատակեր ճանճորսի գետնամերձ տերևների վերջավորությունները բացված «երկփեղկ» թիթեղների են նման, և հենց այդ թիթեղներն էլ զգայուն որսացող ապարատներն են: Թիթեղի վրա մազիկներ կան (խոզաններ), թիթեղը շրջապատված է ատամներով: Երբ միջատը դիպչում է տերևի մակերեսին ցցված այդ մազիկներին, ատամներին, երբ անզգուշաբար բարձրանում կամ նստում է տերևի այդ մասի վրա, տերևի թիթեղներն ակնթարթորեն փակվում են և այլևս բաց չեն թողնում իրենց զոհին: Թակարդը փակվելիս բույսի տերևը շատ հետաքրքիր ձևով շարժվում է, որի ժամանակ ատամները մեկը մյուսի արանքը են մտնում և կիպ սեղմում են որսած միջատին, որն ինչքան շատ է չարչարվում, այնքան «բանտի» պատերը ավելի են սեղմում:

Եվ երբ միջատը թակարդում է, թիթեղների մակերեսին արտադրվում է հատուկ մարսող հեղուկ՝ ֆերմենտ, և մշակված նյութերը ներծծելուց հետո միայն թիթեղները նորից բացվում են, բաց թողնելով միջատի անլուծելի կմախքը:

Ցողիկի տերևները ուռուցիկ մակերես ունեն, ծածկված են հատուկ գեղձիկավոր մազմզուկներով, որոնք կպչուն հյութ են արտադրում, այդ ցողանման կաթիլների փայլով էլ գրավում են միջատներին: Եվ երբ միջատն անզգուշաբար նստում է տերևի վրա, կպչում է նրան, այդ ժամանակ տերևի շարժման նույնպիսի հետաքրքիր երևույթ է տեղի ունենում, միայն թե այս դեպքում ցողիկի մազիկներն են ամեն կողմից թեքվում դեպի թակարդն ընկած միջատը և սեղմում նրան: Միևնույն ժամանակ մազիկների ծայրերին գտնվող գեղձերը սկսում են առատորեն իրենց հատուկ հյութը արտադրել, որը նպաստում է պինդ սննդանյութերի լուծվելուն: Եվ երբ ողջ սնունդը ծծվում է մազիկների բջիջների կողմից, մազիկներն ուղղվում են՝ արդեն պատրաստ նույն «ընդունելությունը» ցույց տալու նոր «հյուրին»:

Ուրիշ միջատակեր բույսեր այլ միջատորս հարմարանքներ ունեն՝ սափորներ, պարկեր, թարթիչավոր, ատամնաձև ելուստներ ու խոռոչներ և այլն:

Ջրային միջատակեր բույսերն ապրում են ջրային բնական ավազաններում. օրինակ, Հայաստանում Կալինինոյի շրջանի ջրային բնական ավազաններում հանդիպում են միջատակեր բույսեր ջրապզուկը, ջրատիկը:

Գ8ՈՒՆԴԱՐ ԳՈՒՆՆԱՐՍՈՆ

# Որդին

Փոխադրեց ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆԸ

Նկարը՝ ԲՈՐԻՍ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Զկնորսական ավանի մոտ ապրում էին հայր և որդի Սնյոլֆուրները: Ավագ Սնյոլֆուրի տարիքը հիսունից անց էր, կրտսերինը՝ նոր էր լրացել տասներկուսը:

Կրտսեր Սնյոլֆուրը աղոտ էր հիշում իր մանկությունը: Կար ժամանակ, երբ ինքը օրեր շարունակ տանը մենակ էր մնում և լալիս անօգնական ու վհատ: Ոչ ոք չկար, որ խնամեր, մայրն ու եղբայրները մահացել էին, իսկ հայրն էլ վախենում էր նրան իր հետ ծով տանել: Նա մանկանը կապում էր մահճակալի ոտքից և ծով էր դուրս գալիս՝ վաստակելու օրվա ապրուստը:

Ավելի որոշակի փոքրիկ տղան հիշում էր հրաշալի արևոտ առավոտները ծովի վրա. ահա ինքը նստած է նավակի քթին, իսկ հայրը դուրս է քաշում փայլփլուն ձկներով ցանցը: Նավակը դանդաղ լողում է և օրորում իրեն:

Բայց և լինում էին տխուր, ամպամած օրեր, երբ երկինքը լալիս էր, և ավագ Սնյոլֆուրը մենակ էր գնում ծով:

Հետո տղան մեծացավ և բոլոր օրերին ուղեկցում էր հորը, և նրանք միշտ անբաժան էին: Կարելի էր կարծել, որ չէին կշտանում միմյանց հետ խոսելուց: Բայց, ոչ, նրանք առանց խոսելու էլ հասկանում էին իրար: Օր էր լինում, երբ հայր ու որդի հազիվ էին փոխանակում մեկ-երկու բառ: Բայց որքան լավ էր միասին:

Սակայն ավագ Սնյոլֆուրը հաճախ, երբեմն նույնիսկ առանց պատճառի, տղային ասում էր. մարդ պետք է ազնիվ ապրի, ազնիվ աշխատի և ոչ ոքի պարտական չմնա: Իսկ մնացած ամեն ինչը ինքն իրեն կգնա: Եվ այդպես էլ էր. հոր և որդու համար ավելի լավ էր քաղցած մնալ, քան թե խանութպանից պարտքով մթերք վերցնել, նրանց բոլոր հարևանները պարտք էին խանութպանին, մեկը՝ շատ, մյուսը՝ քիչ, միայն հայր և որդի Սնյոլֆուրներն էին, որ պարտք չունեին:

Ամենածանր օրերը գարնանն էին լինում, հայր ու որդի նիհարում էին, գունատվում, քուն չէր գալիս աչքերին: Այդ գարունն էլ ցրտաշունչ էր ու անձրևոտ, փչում էր ուժգին քամին, և ահա դժբախտությունը ծեծեց նրանց դուռը:

Մի անգամ վաղ արշալույսին ձնաբուքը խորտակեց նրանց խրճիթը, հայր ու որդի մնացին ձյան տակ: Ինչ-որ հրաշքով կրտսեր Սնյոլֆուրը փրկվեց, իսկ ավագ Սնյոլֆուրը ձյան տակ խեղդվեց,

և հարևանները նրան դուրս քաշեցին մեռած:

Ննջեցյալին դրեցին ժայռի տակ եղած մի հարթ քարի վրա, որ հետո սահնակով քաղաք տանեն՝ թաղելու: Որդին երկար ժամանակ կանգնած էր հոր մոտ, շոյում էր նրա թաց, ալեհեր մազերը և ինչ-որ բան էր շշնջում այնքան կամաց, որ ոչ ոք չէր լսում:

Նա լաց չեղավ, ոչ մի կաթիլ արցունք չթափեց: Մարդիկ զարմանում էին. այդքան փոքր տղա և լաց չի լինում հոր համար, նա մի անխիղճ լակոտ է, արժանի չէ կարեկցանքի, պետք չէ նրան բանի տեղ դնել:

Երբ մարդիկ գնացին սահնակներ բերելու և նաև նախաճաշելու, Կրտսեր Սնյոլֆուրը մնաց մենակ, ձյան հոսքը տեղահան էր արել առանց այն էլ քանդված խրճիթը, մի քանի գերաններ էին միայն ցցված մնացել և տան կարասիների կըտորտանքը: Կրտսեր Սնյոլֆուրը նկատեց, որ իրենց նավակն էլ է ջարդվել: Նա մռայլվեց, բայց էլի լաց չեղավ:

Հետո նստեց հոր մոտ, քարի վրա: Վատ է՝ մտածեց նա: Գոնե նավակը մնար՝ կձկներ: Չէ՞ որ հորը թաղելու համար պետք էր վճարել: Դա ինքը լավ գիտեր, հայրը հաճախ էր ասում. եթե մեկին թաղում են ուրիշների հաշվին, դա մեծ ամոթ է: Հողի մեջ էլ պետք է պատվով պառկել: Հայրը նաև ասում էր, որ իրենք կարող են հանգիստ մեռնել. մարդիկ կծախեն խրճիթը, հողակտորը, ձկնորսական սարքը և այդ փողով իրենց կթաղեն:

Բայց հիմա ամեն ինչ կորած է, բացի հողակտորից: Նրան թվում էր, որ այդ հողը ոչինչ չարժե... և քիչ մնաց մոռանար, որ ուտելու ոչինչ չունի, երևի սովից կմեռնի: Իջնի ափը և իրեն ջուրը նետի. ահա ճիշտ ելքը: Բայց այդ դեպքում՝ իրեն էլ, հորն էլ կթաղեն ուրիշների հաշվին: Բայց չէ՞ որ ինքը հիմա պատասխանատու է երկուսի համար էլ, կարո՞ղ է իր վրա վերցնել այդպիսի պատասխանատվություն, խայտառակել հորը և իրեն: Կրտսեր Սնյոլֆուրը դեռ երբեք չէր ունեցել այդպիսի հոգս: Ծանր մտքերից գլուխը ցավում էր: Ի՞նչ անել: Հուսահատվել էր:

Որտե՞ղ մնա գիշերը: Դրսում շատ ցուրտ է: Ահա մի հոգս ևս: Նա տեղից ելավ, իրար մոտ բերեց մի քանի գերան ու տախտակ, կանգնեցրեց, դրանց վրա քաշեց հին առագաստը, հոլիկի նման մի բան սարքեց, և հոր մարմինն արդեն ծածկի տակ էր: Նա հույս ուներ, որ թույլ կտան հոր հետ մի քանի օր մնալ այդտեղ:

Գործը վերջացնելով, տղան նստեց հոր մոտ: Հոգնած էր, քաղցած և քունը տանում էր: Բայց ինչպե՞ս վճարել թաղման ծախսերը: Տագնապալի հոգսը փախցրեց քունը: Եվ հանկարծ մի միտք ծագեց գլխում, հոգնությունը չքացավ: Տղան դուրս թռավ հոլիկից և վազեց դեպի քաղաք, ուղիղ դեպի խանութպանի տունը՝ ուշադրություն չդարձնելով անցորդների վրա, որոնք այնքան էլ սիրալիր չէին նայում իրեն: «Անխիղճ տղա, մի կաթիլ արցունք էլ չթափեց հոր վրա»,— քրթմնջում էին նրանք:

Մոտենալով խանութպանի տանը, նա առանց տատանվելու ներս մտավ և մեծի նման հարցրեց. կարելի՞ է խոսել տիրոջ հետ: Գործակատարը զարմանքով նայեց տղային, բայց և այնպես բախեց գրասենյակի դուռը: Խանութպանը դուրս եկավ, ուշադիր նայեց տղային և ներս հրավիրեց:

— Դե, ասա տեսնեմ, ինչ գործով ես եկել, տղա,— հարցրեց խանութպանը: Կրտսեր Սնյոլֆուրը մի փոքր շփոթվեց, բայց հետո իրեն հավաքեց և լրջորեն ասաց.

— Դու լավ գիտես, չէ՞, որ մեր ափը, մեր կառանատեղին քոնից լավն է,—խանութպանը ակամա ժպտաց՝ տղայի գործնական, հանդարտ խոսելաձևից:— Ինձ որքա՞ն կվճարես, եթե ձկնորսները ամառը օգտվեն իմ ափից:

— Բայց ավելի լավ չի՞ լինի, եթե ես գնեմ ձեր այդ ամբողջ ցամաքալեզվակը:

— Ոչ,— ասաց տղան,— իսկ ես ո՞ւր կորչեմ ամառը:

— Դու կարող ես մնալ... ես թույլ կըտայի:

—Ամառը ես կսարքեմ մեր խրճիթը, իսկ մինչ այդ մի հոլիկ եմ սարքել: Դու գիտես, չէ՞, հայրս մեռել է, նավակս՝ ջարդվել: Այս ամառ ձուկ որսալ չեմ կարող, դրա համար էլ ես պատրաստ եմ մեր ափը վարձով տալ, եթե քեզ պետք է, իհարկե: Դու հիշում ես, չէ՞, թե քո ձկնորսները որքան հաճախ էին ստիպված լինում մնալ տանը, իսկ ես և հայրս միշտ էլ դուրս էինք գալիս ծով: Պատճառըն այն է, որ մեր ափը ձեր ափից լավն է. այդպես էր ասում հայրս:

— Որքա՞ն վարձ կպահանջես,— հարցրեց խանութպանը:
— Այնքան, որ բավարարի հորս թաղելու առանց ուրիշների օգնության:
Խանութպանը տեղից ելավ և ձեռքը մեկնեց տղային:
— Շատ լավ: Համաձայն եմ: Ես կհոգամ հորդ թաղման և մյուս ծախսերը:— Հանգիստ եղիր,— նա գնաց դեպի դուռը՝ հասկացնել տալով, որ խոսակցությունը ավարտված է:
Տղան չնայած ակնարկը հասկացավ, բայց մնաց կանգնած:
— Իսկ ե՞րբ տեղ կհասնեն գարնանային քո ապրանքները,— հարցրեց տղան նույն լրջությամբ:
— Կարծում եմ՝ մոտ օրերս,— պատասխանեց խանութպանը, նրա դեմքի արտահայտությունից ցանկանալով հասկանալ, թե ինչ է ուզում հարցնել իր այցելուն:
— Քեզ հարկավոր չէ՞ ձեռքի տակ աշխատող մի տղա, ինչպես որ ունեիր անցյալ ամառ,— հարցրեց կրտսեր Սնյոլֆուրը:
— Այո, բայց՝ քեզանից մեծ,— ասաց խանութպանը՝ չկարողանալով թաքցնել ժպիտը:
— Մի րոպե դուրս չե՞ս գա ինձ հետ,— հարցրեց տղան:
Խանութպանը տարակուսած գլուխն օրորեց, բայց գնաց տղայի ետևից: Նրանք դուրս եկան խանութից և կանգ առան մոտիկ բլրակի մոտ: Տղան հանեց ձեռնոցները, մոտեցավ մի մեծ քարի, կռացավ, քարը բարձրացրեց և նորից դրեց ցած: Դառնալով խանութպանին, ասաց.
— Այն տղան, որ անցյալ տարի քեզ մոտ աշխատում էր, չէր կարողանում այդ քարը բարձրացնել: Ես տեսել եմ, թե նա ինչպես մի քանի անգամ փորձեց և ոչինչ չստացվեց:
— Դե ի՞նչ,— ժպտաց խանութպանը,— եթե այդքան ուժեղ ես, թերևս քեզ վերցնեմ:
— Ուրեմն, դու ինձ նաև կկերակրես: Եվ կվճարես այնքան, որքան այն տղային ես վճարել,— հարցրեց կրտսեր Սնյոլֆուրը:
— Այո, իհարկե:
— Դա լավ է: Ուրեմն ինձ պետք չի լինի ուրիշների օգնությունը,— թեթևացած շունչ քաշեց տղան:— Եթե մարդ կարող է ինքն իր գլուխը պահել, պետք չէ խնդրել ուրիշներին,— բացատրեց տղան: Նա հանեց գլխարկը և ձեռքը մեկնեց խանութպանին այնպես, ինչպես այդ անում էր հայրը:— Ցտեսություն,— ասաց նա,— ես ձեզ մոտ կգամ երկու օրից հետո:
— Մի րոպե ներս գնանք,— ասաց խանութպանը:
Նա մոտեցավ խոհանոցի դռանը և իրենից առաջ թողնելով տղային, հարցրեց՝ արդյոք ուտել չի՞ ուզում: Բայց կրտսեր Սնյոլֆուրը գլուխը շրջեց:
— Ինչ է, մի՞թե չես ուզում,— հարցրեց խանութպանը:
— Ուտել, իհարկե, ուզում եմ,— ձայնը քիչ մնաց դավաճաներ տղային. համեղ ճաշերի հոտը տասնապատկեց նրա քաղցը, սակայն դիմացավ,— բայց ես ողորմություն չեմ ընդունում:
Խանութպանը մոտեցավ տղային, շոյեց գլուխը և նշան արեց, որ ճաշը տանեն ներսի սենյակը, և ինքն էլ նրա հետ գնաց այնտեղ:
— Դու անշուշտ տեսել ես, թե ինչպես էր քո հայրը հյուրասիրում սուրճ կամ օղի, երբ նրա ծանոթները գալիս էին ձեր տուն:
— Այո,— ասաց կրտսեր Սնյոլֆուրը:
— Ահա, տեսնո՞ւմ ես, հյուրին պետք է հարգել: Իսկ եթե հյուրը հրաժարվում է, նրան այլևս չեն բարևում: Եվ դու էլ պետք է ուտես ինձ մոտ: Մենք պայմանավորվեցինք կարևոր գործի համար, որը կարող է անհաջող վերջանալ, եթե հրաժարվես լինել իմ հյուրը:
—Որ այդպես է՝ ստիպված եմ,— հառաչեց կրտսեր Սնյոլֆուրը: Նա լուրջ էր և մտախոհ:— Պետք է միշտ կատարես քո գործը և ոչ ոքի պարտք չմնաս: Մընացածն ինքն իրեն կգնա:
— Այո, դրանք ոսկի խոսքեր են,—ասաց խանութպանը և գրպանից հանեց թաշկինակը. նրա ծիծաղը գալիս էր: Լաց ու ծիծաղ խառնվում են, երբ խոսում է այդ տղայի հետ:— Օհ, նյարդերըս կարգին չեն,— քրթմնջաց նա ինքն իրեն և շոյելով կրտսեր Սնյոլֆուրի գլուխը. բարձրաձայն ասաց,— թող աստված օրհնի քեզ, տղաս:
Կրտսեր Սնյոլֆուրը զարմանքով նայեց խանութպանի տարօրինակ արարքին: Մի պահ լռելով, ասաց.
— Ավագ Սնյոլֆուրը երբեք լաց չէր լինում: Եվ ես էլ, երբ դեռ փոքր էի... բայց երբ հայրս մեռավ, այնքան էի ուզում լաց լինել, սակայն վախեցա, որ դա նրան դուր չի գա: Ինձ զսպեցի...
Եվ կրտսեր Սնյոլֆուրը հեկեկալով ընկավ խանութպանի գիրկը:

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## Մհերիկին

Քաջ Մհեր ես,
Փոքրիկ Մհեր,
Որովհետև
Մհերն ես մեր…

Փոքրիկ Մհերն ես
Մեր ահեղ.—
Չարի դեմ մութ,
Բարուն՝ կանթեղ:

Եվ խաղաղ ես
Դու անսահման
Քո Մեծ Մհեր
Պապի նման:

Բայց թե մեկը
Մեզ ցավ բերի,
Գիտեմ, երբեք
Չես համբերի…

Կդառնաս ուժ,
Կդառնաս թև,
Ինչպես Մհերն
Առյուծաձև…

Ու չես փակվի
Դու անձավում՝
Թողած երկիրն
Անհուն ցավում:

## Ծիծեռնակաբերդում Հայոց երգ

Ծիծեռնաբերդում՝
Ցուրթերի երդում,
Սրտերի երդում՝
Ծիծեռնաբերդում:
Ծիծեռնաբերդի
Երդումի հերթում
Հայոց մեծ ողբի
Էջերն են թերթում:
Եվ նզովում են
Ծիծեռնաբերդում
Մարդկանց, որ մարդուն
Մորթում են, քերթում…
Եվ օրհներգում են
Ծիծեռնաբերդում
Մարդկանց, որ արյան
Կոթող են կերտում…
Ծիծեռնաբերդում՝
Արցունքի երդում…
Եվ խինդի երդում՝
Ծիծեռնաբերդում:

Հեյ, իմ անուշ
Հայոց երգ,
Ամեն տողդ՝
Մի ողջ երկ:

Ամեն տողիդ
Բառ ու տառ՝
Կյանք արարող
Մի անտառ:

Դու՝ մերթ հեզ ու
Սգավոր,
Մերթ՝ ծառա, մերթ՝
Թագավոր:

Մերթ «անտունի»,
Մերթ «հայրեն»,
Ու միմիայն
Հայերեն…

Թե չլինես,
Հայոց երգ,
Չի ծաղկի մեր
Ոչ մի հերկ:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



# Ասպազէն

Հագուստների ժամանակակից ձևերը գալիս են հեռավոր ասպետական ժամանակներից: Իսկապես, ի՞նչ է մնացել երբեմնի զրահներից. պահպանվո՞ւմ են արդյոք դրանց տարրերը ժամանակակից նորաձևության և այն հագուստների մեջ, որ այսօր կրում ենք մենք: Պարզվում է՝ այո, և այն էլ ոչ միայն ձևվածքի առանձին մասերի, այլ նույնիսկ մեր վարվելակերպի, պահվածքի ու խոսակցական դարձվածքների մեջ: Մինչ այդ, հագուստը, ժամանակակից լեզվով ասած, եղել է անչափումձև: Եվ երբ սկսեցին պատրաստել զրահներ՝ սաղավարտ, թաթպաններ, թիթեղյա զանկապաններ, անհրաժեշտություն ծագեց հարմարեցնել դրանք մարդու մարմնին: Իսկ դա բնավ հնարավոր չէր առանց ճշգրիտ հաշվարկված ձևեր մշակելու: Պատահական չէ, որ եվրոպական մի շարք լեզուներում «ձև» բառից սերվել են «ձևարար», «դերձակ» բառերը: Զրահներ կրում էին միայն ասպետները: Կոշտ մետաղի հետ շփումը, սակայն, վնասվածքներ էր պատճառում, և անհրաժեշտ էր փափուկ միջնահագուստներ կրել զրահների տակ, որոնք պաշտպանում էին մարմինը կոշտ մետաղի հետ շփումից, մեղմացնում հարվածները: Միջադիր հագուստների գործածությունը կտորեղենի տարբեր տեսակներից հագուստների ստեղծման առիթը դարձավ: Կան այնպիսի մոդելներ, որոնց մինչև այժմ էլ անփոփոխ են. խորը կտրվածքով թևեր, կոկետկաներ, ագույցներ: Երկաթե զրահները այժմ թանգարանային նմուշ լինելուց բացի, ունեն նաև գիտական նշանակություն. դրանք հնարավորություն են տալիս մեզ գաղափար կազմել մեր նախնիների իրանի կառուցվածքի, հասակի ու չափերի մասին: Փորձենք մաս առ մաս դիտել այդ հագուստները:

Գիտնականները հաստատում են, որ գլխարկի նախաձևը եղել է սաղավարտը, որն ունեցել է մի քանի տեսակներ, սակայն գերադասելի էր գմբեթաձևը, քանի որ այն պատերազմի ժամանակ առավել լավ էր դիմակայում գլխատող կամ խոցող հարվածներին: Հին հռոմեական սաղավարտն ուներ նաև ատամնավոր կամ շարժական կատար, որը ոչ միայն ամուր էր, այլև գեղեցիկ: Այդ «գյուտը» նկատի է առնվել հրշեջների սաղավարտները պատրաստելիս: Ժամանակակից գլխարկների հովհարները նույնպես սաղավարտներից են մնացել:

Մարտի ժամանակ դեմքերը պաշտպանում էին մետաղե երեսկալները: Սաղավարտին եղած անցքերը համապատասխանաբար ծառայում էին օդափոխության, շնչելու, շուրջը տեսնելու համար: Այդ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՕՂԼՅԱՆԻ

անցքերի միջով, սակայն, հակառակորդը շատ հաճախ փոշի էր ցա-նում ռազմիկի աչքերի մեջ: Մի շարք ուսումնասիրողներ գտնում են, որ «փոշի մաղել աչքերին» արտահայտությունը այստեղից է ծագել: Ժամանակի հետ սաղավարտների մի քանի տեսակների վրա հայտնվեցին փոշուց պաշտպանող ապակիներ, որոնց հետ է կապ-ված ակնոցի հայտնագործման վարկածը: Դրանք եղել են նաև թա-փանցիկ դիմապատնեշների նախատիպերը, որոնք հիմա գործածում են մոտոցիկլավարները, էլեկտրաեռակցողները:

Սառը զենքը սաղավարտին դիպչելով, մեծ մասամբ վնասում էր ուսերը: Այդ պատճառով հարկ եղավ դրանք պաշտպանել հատուկ թիթեղյա ուսակալներով, որոնք մեր օրերում փոխարինվեցին ուսա-փոկերով, ուսադիրներով և ուսապարկերով:

Ռազմիկը պետք է պաշտպաներ նաև կուրծքը՝ հեծյալի համար առավել խոցելի մի տեղ, ուր և հիմնականում ուղղվում էր հակառա-կորդի գեղարդը: Այդ ձևվածքի մոտիվները լայնորեն գործածվում են նույնիսկ այսօր: Օրինակ՝ ուսամասում խորը կտրվածք ունեցող թևեր: Խոսքն, իհարկե, ուղղակի ընդօրինակման մասին չէ, ժամա-նակակից ձևարարները հազիվ թե հիշեն անցյալի փորձը: Բայց հա-մազգեստի պատմական զարգացումը, ավանդական ձևերը ասպե-տական ժամանակներից պահպանվել են մինչև օրս: Նապաղեոնի [illegible] մեջ ավելի խորը գաղտնիքներ է պահպանում, քան արտաքուստ թը-վում է: Պակաս կարևոր չէր երկաթե հագուստի գործնական նշանա-կությունը, այն հնարավորություն էր տալիս ամուր դիմակայել ծանր հարվածները: Անցյալի փորձը այժմ էլ օգնում է կոնստրուկտորնե-րին՝ տիեզերական սկաֆանդրեր պատրաստելիս:

Ռազմիկի իրանը պարուրող զրահը աչքից թաքցնում էր նաև զրահակրի ով լինելը: Շեքսպիրն ասում էր՝ «հագուստը մատնում է մարդու ով լինելը»: Որոշ ժամանակ անց զրահի վրայից սկսեցին կտորից հագուստներ կրել, որոնց վրա նշված էին տիրոջ տոհմա-կան գույներն ու զինանշանը: Դրանով վասալները կռվի մեջ ավելի հեշտ էին գտնում իրենց իշխաններին:

Այսպիսով, արդյո՞ք ամեն ինչ իմացանք զրահի մասին:

Իհարկե, ոչ:

— Նայեցեք, զորարշավ է սկսվում: Զինավառ ասպետը մոտե-նում է Գեղուհուն և նրանից՝ որպես պարգև, ստանում թեզանիքը: Ասպետը այն ամրացնում է իր սաղավարտին: Մի ուրիշ գույնի թե-զանիք էլ հակառակորդի սաղավարտին է ծածանվում:

— Ասպետներն են ասպարում…

# ՄԻԼՈՍՅԱՆ ԱՖՐՈԴԻՏԵՆ



*Հունարենից թարգմանեց*
**ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԸ**

Փարիզում՝ հռչակավոր Լուվրի թանգարանում է պահպանվում համաշխարհային քանդակագործության անգերազանցելի գլուխգործոցներից մեկը՝ Միլոսյան Աֆրոդիտեի արձանը (մ. թ. ա. 2-րդ դար):

Հունական դիցաբանության մեջ Աֆրոդիտեն հայերի Աստղիկ և հռոմեացիների Վեներա աստվածուհիների նման սիրո և գեղեցկության աստվածուհին է:

Հունաստանում Աֆրոդիտե աստվածուհուն նվիրված շատ արձաններ են հայտնաբերված, սակայն դրանցից իր վեհությամբ և գեղեցկությամբ առանձնանում է Միլոսյան Աֆրոդիտեն:

Այն կոչվել է Միլոսյան, որովհետև հայտնաբերվել է հունական Միլոս կղզում: Միլոսը գտնվում է Էգեյան ծովի հարավում, Կիկլադներ կոչվող ավելի քան երկու հարյուր մեծ ու փոքր մարդաբնակ և անմարդաբնակ կղզիներից բաղկացած արշիպելագի կազմում: Մեղմ կլիման, հարուստ ընդերքը և ճանապարհի վրա գտնվելու հանգամանքը նպաստել են, որ մեր թվարկությունից 3000 տարի առաջ այստեղ ծաղկի մի հարուստ քաղաքակրթություն, որն անվանվել է կիկլադյան:

Միլոսում, հատկապես հյուսիս-արևելյան մասում, պեղումների ժամանակ հայտնաբերվել են արվեստի նշանավոր շատ գործեր. մի պատանու արձան, բժշկության աստված Ասկլեպիոսի արձանի գլուխը (մ. թ. ա. 4-րդ դար) և ծովերի աստված Պոսեյդոնի արձանը (մ. թ. ա. 5-րդ դար): Սակայն, 1820 թվականին Գեորգիոս Կենտրոտաս անունով մի գյուղացու հայտնաբերած Աֆրոդիտե աստվածուհու հռչակավոր արձանն էր, որ իր անունը վերջնականապես կապեց կղզու անվան հետ:

Միլոսյան Աֆրոդիտեն կերտված է ըսպիտակ մարմարից: Աստվածուհու մարմնի ստորին մասը ծածկված է զգեստով, բարձրությունը 204 սանտիմետր է:

Ինչպե՞ս, ի՞նչ հանգամանքների բեր-

մամբ Միլոս կղզում հայտնաբերված Աֆրոդիտեի արձանը հանգրվանեց Լուվրի թանգարանում:

Այդ նույն ժամանակ (1820 թ.) Միլոսում խարիսխ էր գցել ֆրանսիական «Էստաֆետ» ռազմանավը: Մի քանի ֆրանսիացի նավաստիներ Վուտիե ազգանունով մի սպայի ղեկավարությամբ ափ են դուրս գալիս Կլիմա կոչվող բնակավայրի մոտ՝ պեղումներ կատարելու նպատակով: Ճանապարհին նրանք պատահաբար հանդիպում են Կենտրոտասին, որն իր որդու հետ հողի տակից դուրս էր բերել աստվածուհու արձանի երեք բեկորները, որոնց միացումից լիակատար մի ամբողջություն էր ստացվել: Ցնցված արձանի գեղեցկությամբ, նավաստիներն այդ մասին անմիջապես հայտնում են նավապետին: Վերջինիս կարգադրությամբ նավը ուղղություն է վերցնում դեպի Կոնստանդնուպոլիս: Արվեստի այդ գլուխգործոցի մասին նավապետը իրազեկ է պահում տեղի ֆրանսիացի դեսպանին: Կարճ ժամանակ հետո «Էստաֆետը» դարձյալ հայտնվում է Միլոսի ջրերում՝ իր հետ բերելով ֆրանսիական դեսպանության առաջին քարտուղարին, որին հանձնարարված էր ինչ գնով էլ լինի՝ ձեռք բերել արձանը: Սկզբում դեսպանության քարտուղարը բարեկամաբար համոզում է կղզու բնակիչներին, որ արձանը իրեն հանձնվի: Սակայն, վերջիններս հրաժարվում են: Սկսված վեճը այնքան է բորբոքվում, որ շուտով վեր է ածվում ընդհարման: Օգտվելով թվական գերակշռությունից, ֆրանսիացիները, ստիպում են կղզու բնակիչներին հանձնել աստվածուհու արձանը: Կոստանդնուպոլսի ֆրանսիացի դեսպանը Միլոսյան Աֆրոդիտեն ուղարկում է Ֆրանսիա և նվիրում Լյուդովիկոս XVIII թագավորին, իսկ վերջինս իր հերթին՝ Լուվրի թանգարանին:

Այժմ Միլոս կղզու թանգարանում է գտնվում արձանի ճշգրիտ պատճենը:

Վերջերս Հունաստանի կուլտուրայի և գիտության մինիստր Մելինա Մերկուրին քանիցս դիմել է ֆրանսիական կառավարությանը, որպեսզի «Միլոսյան Աֆրոդիտեն» Հունաստանին վերադարձվի: Սակայն ֆրանսիական կառավարությունը նրբանկատորեն հրաժարվել է, ընդգծելով, որ փորձագետների կարծիքով՝ անչափ փխրուն դարձած արձանը տեղափոխելիս կարող է լրջորեն վնասվել:

## ԺԱՄԱՆՑ




Հետևյալ թվերը վերադասավորել այնպես, որ դրանց գումարը հորիզոնական, ուղղահայաց ուղղություններով և անկյունագծով լինի 111:

**Առաջարկը՝ ՆՈՐԱՅՐ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ**




**ՄԱՏ 2 ՔԱՅԼԻՑ**

Սպիտակներ Աa7, Թb2, Նb3, Ն d8, Փg4, Փh6, Ձd5, զd4
Սևեր Աe4, փg2, փh2, զd3, f4, g7

**ԱՇՈՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**



ԱԼԵՔՍԱՆԴՐ ԲԱԺԲԵՈՒԿ-ՄԵԼԻՔՅԱՆ. (1891—1966 թթ.) «ԱԺԴԱՐԱՐՈՒՀԻՆ», «ԿԱՆԱՅՔ ՀԱՅԵԼՈՒ ԱՌՋԵՎ»

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱԹԱԲԵԿՅԱՆ Ն.

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.